# ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 1-Ը



*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

ԶԱՆԳՆ ԱՌԱՋՎԱՆՆ Է ՆՈՐԻՑ,
ԲԱՅՑ ՈՒՐԻՇ Է ԴԱՍԱՐԱՆԸ,
ՊԱՏԵՐԻ ԳՈՒՅՆՆ Է ՈՒՐԻՇ,
ԵՎ ՈՒՐԻՇ Է ՊԱՏՈՒՀԱՆԸ:

ՆԵՐՍ Է ՄՏՆՈՒՄ ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆ,
ԱՉՔԵՐԻ ՄԵՋ ԺՊԻՏՆ Է ՆՈՒՅՆ,
ԲԱՅՑ ԶԳՈՒՄ ԵՆՔ, ՈՐ ՓՈԽՎԵԼ Է,
ԾԵՐԱՆՈՒՄ Է, Ա՜Խ, ԾԵՐԱՆՈՒՄ:

ԱՂՋԻԿՆԵՐՆ ԵՆ ԽՈՆԱՐՀ ՆՍՏԵԼ,
Օ՜, ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ՓՈԽՎԵԼ ՆՐԱՆՔ,
ԵՎ ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ԱՉՔԵՐԻ ՄԵՋ
ՊԱՀՈՒՄ ԱՅԴՔԱՆ ՊԱՅԾԱՌ ԿՐԱԿ:

ԱՐԴԵՆ ՏՂԵՐՔՆ ԷԼ ՆՈՒՅՆԸ ՉԵՆ,
ԾԻԾԱՂՈՒՄ ԵՆ ԲԱՄԲ ՁԱՅՆԵՐՈՎ,
ԵՎ ՈՒՐԻՇ ԵՆ, ՈՒՐԻՇ ԱՐԴԵՆ,
ԱՐԴԵՆ ՈՒՐԻՇ ԿՈՇԻԿՆԵՐՈՎ:

Ո՞Վ ԿԱՍԻ, Ո՞Ր ԿԱԽԱՐԴՆ Է ՄԵՐ
ՄԵՋ ԲՈԼՈՐԻՍ ՓՈԽԵԼ ԱՅՍՊԵՍ,
ՉԷ՞ ՈՐ ԵՐԿՈՒ ԱՄԻՍ ԱՌԱՋ
ՈՒՐԻՇ ԷԻՆՔ, ՈՒՐԻՇ ԱՅՆՊԵ՞Ս:

ԶԱՆԳՆ ԱՌԱՋՎԱՆՆ Է ՆՈՐԻՑ,
ԵՎ ԱՐԵՎՆ ՈՒ ԵՐԿԻՆՔԸ՝ ՆՈՒՅՆ,
ԲԱՅՑ ԱՆՈՐՈՇ ՄԻ ՀՐԺՎԱՆՔ ԿԱ
ԿԱՎԻՃԻ ԹՈՒՆԴ, ԹՈՒՆԴ ՀԵՏՔԵՐՈՒՄ:

# ՆՈՐԻՑ ԴՊՐՈՑՈՒՄ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*



ԴՈՒ ՈՒՆԿՆԴԻՐ ԵՍ ԵՂԵԼ
ՋՐՎԵԺՆԵՐԻ ՇԱՌԱՉԻՆ,
ԼԵՌՆԵՐՈՒՄ ԵՍ ԸՆԴՈՒՆԵԼ
ԼՈՒՅՍԻ ՇՈՂԵՐՆ ԱՌԱՋԻՆ:
ԼՈՒՌ ԱԿԱՆՋԵԼ ԵՐԳԱՍԱՑ
ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԿԱՐԿԱՉԻՆ
ԵՎ ՈՂՋՈՒՆԵԼ ՅՈՂԱԹԱՑ
ՍԱՐԻ ԿԱՐՄԻՐ ԿԱԿԱՉԻՆ:
ԵՎ ՈՂՋՈՒՆՈՒՄ ԵՍ ԱՅՍՕՐ
ԶԱՆԳԻ ԶՎԱՐԹ ՂՈՂԱՆՋԻՆ,
ԱՅՆ ԳԵՂԵՑԻԿ ՂՈՂԱՆՋԻՆ,
ՈՐ ԿՈՉՎՈՒՄ Է՝ ԱՌԱՋԻՆ:
ՇԱՏԵՐԻ ՀԵՏ ՆԱ ԳՆԱՑ
ՈՐՊԵՍ ՀԱՄԲՈՒՅՐ ՄԻ ՎԵՐՋԻՆ,
ԲԱՅՑ ԱՌԱՋԻՆ ՆԱ ԴԱՐՁԱՎ
ԵԿՈՂՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ:
ՏՈ՜ՒՐ ԵՐԱԶԸ ՔՈ ԱՆՎԵՐՋ
ԶԱՆԳԻ ԶՎԱՐԹ ՂՈՂԱՆՋԻՆ,
ՈՐ ՎԵՐՋԱՆՈՒՄ ՈՒ ՆՈՐԻՑ
ԿԱՆՉ Է ԴԱՌՆՈՒՄ ԱՌԱՋԻՆ:

*Նկ. ՎԱՂԻՆԱԿ ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒ*





# ՀԱՆՍ ՔՐԻՍՏԻԱՆ ԱՆԴԵՐՍԵՆ

*Այս տարի լրացավ դանիացի մեծ հեքիաթագիր Հանս Քրիստիան Անդերսենի ծննդյան 170 և մահվան 100 տարին։ Ինքնակենսագրությունը, որից հատվածներ ենք տպագրում ստորև, Անդերսենը գրել է 1832 թվին, 28 տարեկան հասակում։ Գրողը պատմում է իր կյանքի մի շարք դեպքեր, որոնք չեն հիշատակվում հետագայում լույս տեսած «Իմ կյանքի հեքիաթը» գրքում։ Հումորով և արտահայտչորեն գրված նրա այս «Ինքնակենսագրությունը», դանիացի գրականագետների կարծիքով, ոչ միայն գրողի մանկությունը և պատանեկությունը ուսումնասիրելու փաստաթուղթ է, այլև դանիական գրականության նշանավոր կենսագրական ստեղծագործություններից։*

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ

... Պապս և տատս Ֆյուն կղզու ունևոր գյուղացիներից էին, սակայն նրանց դժբախտություն պատահեց. անասունները սատկեցին, իսկ ցանքը բերք չտվեց: Դրա հետևանքով պապս մի քիչ խենթացավ և տատիս հետ տեղափոխվեց Օդենսե քաղաքը: Նրանց միակ զավակը հայրս էր, որը շնորհալի տղայի համբավ ուներ, և քաղաքի մի քանի մեծահարուստներ ծնողներին առաջարկեցին իրենց օգնությունը, որպեսզի հայրս հնարավորություն ունենա ուսում ստանալու: Սակայն դա ծնողների սրտովը չէր, և պապս պահանջեց, որ որդին կոշկակարի մասնագիտություն սովորի: Պատանեկան կենսասիրությամբ լի հայրս իր հոգուն խորթ այս իրավիճակում էլ չկորցրեց ոգու արիությունը: Ազատ ժամերին նա կարդում էր Հոլբերգի գրքերը, մանկական խաղալիքներ պատրաստում, նույնիսկ մի շարք երգեր հորինեց, որոնք, սակայն երբեք չտպագրվեցին: Ենթավարպետ դառնալով, դեռ նոր 20 տարին լրացած, հայրս ամուսնացավ մորս հետ, մի աղքատ աղջկա, որը նրան նախընտրեց իր նախկին տիրոջից՝ հարուստ գինեգործից: Նրանք ոչինչ չունեին, բայց անչափ սիրում էին իրար: Փող չունեին, որ նույնիսկ մահճակալ գնեին: Այդ ժամանակ մահացավ մի կոմս. նրա դագաղը դրեցին սև կտավով ծածկված պատվանդանի վրա, որը և հայրս թաղումից հետո գնեց աճուրդում: Դեռ մանկուց տիրապետելով սղոցին ու ռանդային, նա այդ մահվան մահիճից մահճակալ պատրաստեց (հիշում եմ, սև կտավից մնացել էին ծվեններ, այնպես որ մահճակալը գեղեցկությամբ չէր փայլում): Եվ այսպես, հարուստ, բայց անշունչ հանգուցյալի փոխարեն, մի տարի անց (ապրիլի 2-ին) մահճակալին պառկած էր կենդանի, նորածին բանաստեղծը, այսինքն՝ անձամբ ես, և այս հանգամանքը ինձ շատ բանաստեղծական է թվում: Ի միջի այլոց, ես շատ փոքր էի և կնքելու ժամանակ անտանելի ճչում էի եկեղեցում: Փնթփնթան պաստորը դարձավ իմ առաջին գրախոսը, ինձ անվանելով՝ փիսիկ...

... Այս մեծ քաղաքում[1] ես ոչ ոքի չէի ճանաչում: Փոքրիկ կապոցը ձեռքիս արևմտյան դարպասից քաղաք մտնելով, նկատեցի, որ եկվորների որոշ մասը գնում է Վեստերգադեում գտնվող «Գվարդիական տուն» հյուրանոցը: Երբ անձնագիր ցույց տալով՝ ես էլ այդտեղ մի փոքրիկ սենյակ ստացա, թվաց, թե վերջապես հասել եմ բաղձալի նպատակիս: Ես գիտեի, որ ապագայում ինձ շատ դժվարություններ են սպասում, բայց հույս դնելով աստծու վրա՝ որոշեցի հաճելի անցկացնել առաջին օրը, այսինքն՝ անհոգ թափառել մայրաքաղաքի փողոցներում: Ողջ քաղաքը եռուզեռի մեջ էր և հնարավոր չէր շարժվել Էստերգադեով: Արդարացան սպասումներս. թիվ չկար մարդկանց: Ծաղկավաճառուհին, որին հարցրի թատրոնի տեղը, ցույց տվեց փողոցի վերջը: Շուտով հասա սրտիս հարազատ վայրին: Ես պտտվում էի թատրոնի շենքի շուրջը ու ամբողջ հոգով խնդրում աստծուն՝ օգնել այդտեղ ընդունվելու և լավ դերասան դառնալ: Ինձ մոտեցավ տոմսավաճառ մի պատանի և առաջարկեց տոմս գնել: Ես չհասկացա, թե ինչ է նա ուզում, բայց որոշելով, որ նա ուզում է ինձ նվեր տալ՝ համաձայնեցի: Մի շարք տեղեր թըվարկելով, նա հարցրեց, թե որն եմ ցանկանում, իսկ ես պատասխանեցի, որ հույս դնում եմ նրա բարության վրա: Այդ ժամանակ պատանին զայրացավ ու բղավեց. «Լողլող անասուն, դու ի՞նչ է, ծե՞ռ ես առնում ինձ»: Ես այնքան վախեցա, որ անմիջապես հեռացա:

Հաջորդ օրը ինչքան հնարավոր էր լավ հագնվեցի. հագա դերձակուհու կարած դարչնագույն ֆրա-

[1] Կոպենհագենում՝ Դանիայի մայրաքաղաքում։



կը, մեծ կրծքակալը և գլխարկ դրի, որը իջնում էր մինչև աչքերս։ Այս տեսքով ես Բրեդգադեով ներքև քայլեցի, դեպի բալետի մենապարուհի տիկին Շալի տունը, որպեսզի նրան տամ իմ միակ հանձնարարական նամակը։ Մուտքի հարթակում ես երկար սպասեցի ընդունելության, մինչև ներս թողեցին։ Տիկին Շալը ինձ երկար նայեց և մտածեց (ինչպես հետագայում խոստովանեց ինքը), որ դիմացինը խելագար է, քանի որ նրա հարցին, թե արդյոք դերասանական տաղանդ ունեմ, ես առաջարկեցի մի տեսարան խաղալ և այդ նպատակով ընտրեցի Անինայի դերը «Կենդրիլյոնից»[1], մի դեր, որը ինձ վրա մեծ տպավորություն էր թողել, բայց որը ընդամենը երկու անգամ էի լսել Օդենսեի թատրոնում, երբեք չէի կարդացել տեքստը ու չէի սովորել մեղեդիները։ Այդ պատճառով ես հանպատրաստից ստեղծում էի տեքստն ու երաժշտությունը, իսկ որպեսզի ավելի լավ կատարեմ դափով պարը՝ հանեցի կիսակոշիկներս, դրեցի սենյակի անկյունում և պարեցի ոտքերիս մատների վրա։ Իհարկե, տիկին Շալը ինձ մեծ հույսեր չներշնչեց։ Ես լաց էի լինում, խոսում, թե ինչքան անկեղծ է թատրոն ընդունվելու ցանկությունս, ասում, որ պատրաստ եմ կատարելու ամեն մի հանձնարարություն և բավարարվելու քչով, միայն թե նա համաձայնի ինձ օգնել։ «Ես կխոսեմ Բուռնոնվիլի[2] հետ, որպեսզի ձեզ թույլատրի պարերին մասնակցելու»,— ասաց տիկին Շալը հրաժեշտի ժամանակ, և ես նրանից հեռացա արցունքոտ աչքերով։ Երկրորդ այցելությունս պրոֆեսոր Ռաբեկին[3] արի, Բակեհուսետում, սակայն նա ոչնչով չուրախացրեց։ Տեր Իվերսենը հավանաբար նրան նամակ էր գրել իմ մասին, բայց Ռաբեկը կարողացավ միայն խորհուրդ տալ դիմել գլխավորին՝ պարոն Հոլստեյնին։ Մյուս օրը ես նրա մոտ գնացի։ Կես տարի առաջ պրոֆեսոր Գուլբերգը իմ մասին նամակ էր ուղարկել Հոլստեյնին, բայց երբ նա ինձ տեսավ, սկսեց համոզել, որ ոչ մի հեռանկար չունեմ թատրոնում։ Ես, իբր, չափից դուրս նիհար եմ և իմ խղճուկ տեսքը բեմում ծիծաղ կառաջացնի։ Բացի այդ, թատրոնին պետք են կրթություն ստացած երիտասարդներ։ Ես հուսահատվել էի, խնդրեցի թույլ տալ գոնե պարերին մասնակցելու։ «Ո՛չ,— ասաց նա,— մինչև մայիս ոչ մի հնարավորություն չկա ձեզ աշխատանքի ընդունելու, և դա ինչ-որ չափով ձեզ կօգնի, քանի որ չի կարելի խսկույն աշխատավարձ տալ, իսկ առայժմս դուք ոչնչի պիտանի չեք»։ Օ տե՛ր, միայն մայիսին։ Չէ՞ որ հիմա դեռ սեպտեմբերն է, և իմ ունեցածը մի քանի թալեր է, որոնք օրեցօր հալչում են...

... Ես արտակարգ մանուկ արարած էի, իսկական բանաստեղծական հոգի։ Ամեն ինչ ինձ վրա խորը տպավորություն էր թողնում, կարող էի ծիծաղել ու լացել միաժամանակ, բայց հիմնականում կենսուրախ ու աշխույժ էի երեխայի պես, չնայած արդեն 16 տարեկան էի։ Ամեն առավոտ գնում էի Թագավորական թատրոնին կից պարի դպրոց, «basedement» վարժություններ էի կատարում պատի մոտ։ Տիկին Կրեցմերը[1] այն ժամանակ դեռ փոքրիկ աղջնակ էր, և մենք մրցում էինք, թե ով առանց հոգնելու ավելի շատ վարժություններ կկատարի։

---

1 Լիրիկական, կախարդական ներկայացում։

2 Ա. Բուռնոնվիլ — Թագավորական թատրոնի բալետմեյստեր։

3 Կ. Լ. Ռաբեկ — գրող, Թագավորական թատրոնի դիրեկտորներից մեկը։

---

1 Ա. Մ. Կրեցմեր — բալետի նշանավոր պարուհի։

Ես անգիր գիտեի շատ բանաստեղծություններ ու արտասանում էի աշակերտների համար: Հաճախ նրանցից ավագները, ավելի կրթվածները, ինձ գաղտնի հայտնում էին, որ իզուր եմ դպրոցում ժամանակ կորցնում, կարող եմ հաջողության հասնել ուրիշ ասպարեզում (առանձնապես գովեստների էր արժանանում ձայնս): Տիկին Տորգեսենի տանը ես հրապուրված կարդում էի ձեռքս ընկած ամեն մի գիրք: Մի կերպ հավաքած գրոշներով գրքեր էի վերցնում տիկին Լանգեի վճարովի ընթերցարանից: Իմ փոքրիկ սենյակում չկար սեղան և նստելու հնարավորություն. Այդ պատճառով վաղ, երեկոյան ժամը 6-ը չեղած, պառկում էի անկողնում, ինձ մատուցում էին ընթրիք, մոմ, և ես երազներով տեղափոխվում էի մի այլ աշխարհ: Վերակենդանանում էին հիշողությունները Օդենսայում ունեցած իմ տիկնիկային փոքրիկ թատրոնի մասին, և ես ցանկություն էի զգում ստեղծել նման մի բան: Ես որոշեցի դա իրականացնել, ու 16 տարեկան տղան սկսեց տիկնիկների հագուստներ կարել: Որպեսզի ճարեի անհրաժեշտ փալասները, պտտվում էի Էստերգադեի խանութներում և խնդրում մետաքսի ու թավշակաշու կտորտանքներ, որոնցից կարում էի հիանալի զգեստներ: Ահա այսպես անցավ պատանեկության իմ մի տարին: Պարի դպրոցի աշակերտ լինելու շնորհիվ ինձ թույլատրեցին ամեն երեկո նստել դերասանական օթյակում և կատակերգություններ նայել: Այստեղ խայտաբղետ հասարակություն էր հավաքվում, և ես հաճախ տարօրինակ խոսակցություններ էի լսում, սակայն հոգիս մաքուր էր և մտքերս միայն թատրոնով էին զբաղված:

Գուլբերգը[1] ինձ հետ եռանդով դանիերեն էր պարապում, ստիպում էր բանաստեղծություններ անգիր անել ու արտասանել և բոլորի մոտ գովում էր իմ անարատ մանկական բնավորությունը: Սակայն նրանից ստացված դրամը վերջացավ, իսկ տանտիրուհիս պահանջում էր 20 թալեր: Այդ ժամանակ Գուլբերգը թագավորի ծննդյան օրվան նվիրված երեկույթին ելույթ ունեցավ: Քանի որ հայտարարության մեջ նշված էր, որ երեկույթի եկամուտը տրամադրվելու է աղքատ արվեստագետի, քիչ փող չհավաքվեց: Տիկին Տորգեսենը ստացավ իր 20 թալերը: Ընդհանրապես, երեխայի նման ես կապվել էի նրան, և բոլորովին չէի գիտակցում, որ իրականում նա չարաշահում է իմ անմխիթար վիճակը: Ես ապրում էի երջանիկ երազներում, համարյա չնկատելով ինձ շրջապատող այլասերված միջավայրը: Սենյակի մեջ պառկած զվարճանում էի տիկնիկներով ու թատրոնով, իսկ մնացածը ինձ չէր հետաքրքրում: Միայն այժմ, երբ արդեն մեծ եմ, գիտակցում եմ, թե ինչ անդունդի եզրին էի ես խաղում և երազում...

... Թագավորական թատրոնի երգի ուսուցիչ Կրոսինգը[1] ասեց, որ ես լավ ձայն ունեմ և որոշեց ինձ ընդունել իր դպրոցը, որպեսզի երգիչ դարձնի. Բայց նախ պետք է հանդես գայի երգչախմբում. Այսպիսով, ժամանակս ստիպված բաժանում էի երգի ու պարի միջև: Թատրոնում հաճախ անցնելով վարագույրների ետև, թվում էր, թե բավականին առաջընթաց եմ կատարել նվիրական նպատակս իրագործելու ճանապարհին: Դեռ աղջնակ Իդա Վուլֆը[2] նույնպես գալիս էր վարագույրների ետև, և մենք երեկոյան հաճախ նստում էինք ու զրուցում, քանի որ ես միայն նրան էի վստահում: Ֆիստերը[3] չար տղա էր և ինձ զայրացնում էր, իսկ Բոլինա Աբրահամսենը[4] քայլում էր կնճռապատ տհասի պես, որի հետ ոչ ոք չէր խոսում: Ես դեռ ոչ մի անգամ չէի եղել բեմում: Մի անգամ երեկոյան կանգնել էի վարագույրների ետև ու դիտում էի «Երկու փոքրիկ սավոյարները»: Տեսարաններից մեկում պետք է շատ անձեր լինեին և մասնակցում էին բոլոր աշակերտները ու, նույնիսկ, բեմի մի քանի բանվոր: Վուլֆը դիմեց ինձ. «Եթե դուք էլ եք ուզում մասնակցել, ասացեք դիմհարդարին, որպեսզի ինձ նման գրիմ

---

[1] Ֆ. Հեգ-Գուլբերգ — բանաստեղծ, լեզվաբան.

[1] Ռ. Կ. Կրոսինգ — կոմպոզիտոր։

[2] Ի. Վուլֆ — օպերային երգչուհի։

[3] Լ. Ֆիստեր — կատակերգու դերասան։

[4] Բ. Աբրահամսեն — օպերային երգչուհի։



անի»։ Այտերս խնկույն կարմրեցին, և բաբախող սրտով բոլորի հետ ես էլ բեմ մտա։ Ես անչափ երջանիկ էի, երբ դերասան Բաուերը մոտեցավ և շնորհավորեց առաջին ելույթս, բայց հետո հասկացա, որ նա ծաղրում էր։ Ես աննկատ դուրս եկա, որպեսզի մութ անկյունում, վարագույրի ետև, վիրավորանքից լաց լինեմ։ Սակայն շուտով նորից համապատասխան զգեստով ես բեմ բարձրացա։ Ներկայացվում էր «Նինա» բալետը։ Մի պատկերում երկու երաժիշտ նվագում են Նինայի համար, իսկ նա դժգոհ է, քանի դեռ չեն կատարում սիրած տաղային հիշեցնող մեղեդին։ Այդ երկու երաժիշտների դերերը կատարելու համար ընտրեցին պարի դասարանի ամենաբարձրահասակ աշակերտներին, որոնցից մեկը ես էի։ Դա իմ առաջին ելույթն էր։ Արդեն ժամը 4-ին ես տեղում էի և ինձ հանդերձավորեցին։ Ներկայացմանը մենք երկու երաժիշտներս, պետք է լինեինք առաջին պլանում։ Տիկին Շալը Նինայի դերն էր կատարում, և ես ուրախ էի, որ նա ավելի շատ ինձ է ուշադրություն դարձնում (հավանաբար ես շատ ծիծաղելի տեսք ունեի)։ Այնուհետև կոմպոզիտոր Դալենը գրեց «Արմիդա» բալետը, ուր ես էլի փոքր դեր էի կատարում։ Դրանից հետո ուժեղացավ մեծ դեր խաղալու ցանկությունս։ Գուլբերգը խոսեց Լինդգրենի[1] հետ, և ես նրա մոտ գնացի։ Մի դերով փորձելով կարողություններս, Լինդգրենը ասաց, որ կատակերգական դերերի տաղանդ ունեմ և թույլատրեց խաղալ իր աշակերտների՝ Ֆիստերի, Ռոնստեդի և ուրիշների հետ։ Սակայն ես ուզում էի հուզիչ դերերում հանդես գալ և համարձակվեցի խնդրել Կորեջոյի[2] դերը։ «Օ տե՛ր, թանկագին մանուկ,— պատասխանեց նա,— չէ՞ որ այդ դերին հարմար չէ ձեր արտաքինը. լողլող, նիհար. հերոսը, հավատացեք, հանդիսատեսի միայն ծաղրին կարժանանա։ Այնուհանդերձ դերը կարող եք սովորել»։ Ութ օր անց, ես նորից եկա Լինդգրենի մոտ, և նա առաջարկեց արտասանել Կորեջոյի մենախոսությունը պատկերասրահում։ Այն տեսարանում, որտեղ նկարիչը սքանչանում է արվեստի հրաշալի գանձերի տեսքով, ես անկեղծորեն լաց եղա։ Ծեր Լինդգրենը ձեռքս սեղմեց ու ասաց. «Դուք բարի սիրտ ունեք, անկասկած, հիանալի միտք, և իզուր եք անտեղի ժամանակ կորցնում. Դուք պետք է սովորեք, դերասան չեք դառնա, բայց կան այլ գեղեցիկ զբաղմունքներ, բացի այս արվեստից»։ «Մի՞թե լրիվ անընդունակ եմ, նույնիսկ կատակերգակա՛ն դերերի համար,— բացականչեցի ես։— Օ, տե՛ր, ի՞նչ դժբախտ եմ, այսուհետև ի՞նչ եմ անելու»։ Լինդգրենը խորհուրդ տվեց լատիներեն սովորել և Գուլբերգին խնդրել՝ քերականություն պա-

1 Ֆ. Լինդգրեն — դերասան և ռեժիսոր։

2 «Կորեջո» — Էլենշլեգերի ողբերգությունը։

րապել, իսկ երբ բավարար կրթություն ստանամ, հետագայում ինքը հաճույքով կօգնի ինձ...

... Գուլբերգի մոտ ես պետք է ամեն շաբաթ արտագրեի նրա բանաստեղծությունները և անգիր անեի, որ ինձ այնքան էլ դուր չէր գալիս։ Ես ցանկացա նորից բանաստեղծություններ գրել, ինչպես մանկական տարիներին։ Նոր լույս տեսած «Փոստային աղավնի» ամսագրում ինձ առանձնապես հետաքրքրեց «Անտառային երգչախումբ» պատմվածքը, որի սյուժեն օգտագործեցի մեծ ողբերգության համար։ Գուլբերգը համաձայնեց կարդալ իմ ստեղծագործությունը և ստուգել լեզուն։ Նա ողբերգությունը կարդաց իր որոշ բարեկամների մոտ, և բոլորն էլ զարմացան իմ հարուստ ֆանտազիայով և շարադրանքի սահունությամբ, քանի որ կրթություն չունեի։ Թե ինչքան միամիտ էի ես, նկատելի է Գուլբերգուհին ուղղած իմ հարցից, թե արդյոք արժե նման գործով զբաղվել։ Ես շատ էի մտածում, թե արդյո՞ք լավ չէ հրաժարվել գրելուց ու զբաղվել տիկնիկային մեծ թատրոնով։ Սակայն իմ նոր ցանկությունը հաղթեց։

Իմ ստեղծագործությունը ես կարդացի Կոլբյոռնսենների ընտանիքում, Բակեհուսեթում։ Այդտեղ էր նաև տիկին Ռաբեկը, որը կատակելով պատմեց, թե ինչպես են իր համար բանաստեղծներ Էլենշլեգերը և Ինգեմանը նույնպես կարդացել իրենց առաջին գործերը։ Հետագայում տիկին Ռաբեկի մահվանից քիչ առաջ, երբ ես որպես ուսանող այցի էի գնացել, նա պատմեց, թե ինչ-որ ժամանակ նրան կարդացել են իմ գործերից մեկը, որի մեջ շատ փոխառություններ կային Ինգեմանից, բայց իր դիտողությանը պատասխանել եմ. «Այո, սակայն դա այնքա՜ն գեղեցիկ է»։ Բակեհուսեթում ես ծանոթացա պրոֆեսորներ Տիլեի և Մյոլի հետ, որոնք այն ժամանակ ուսանողներ էին, ինչպես նաև Բիրգիտա Անդերսենի հետ, որը միշտ արտասանելուս համար ինձ «Փոքրիկ արտասանող» մականունը տվեց։ «Անտառային երգչախումբ» ողբերգությանս մասին ամեն մի բարյացակամ արտահայտության ես նայում էի խոշորացույցով, անսահման շոյված էի զգում, հավատում էի՝ ինչ ասում էին մարդիկ, և ինձ, իրոք, թվում էր, թե այդ գործը վարպետորեն է գրված և բոլորը պետք է այն լսեն։ Ես գնացի Էլենշլեգերի տուն։ Նա գովեց ինձ և հրաժեշտի ժամանակ սեղմեց ձեռքս։ Այդ ձեռքսեղմումը ես ամենից բարձր գնահատեցի և որոշեցի, որ դրանով բանաստեղծ եմ օծվել։ Այցելեցի՛ նաև Ինգեմանին, որը բարեկամաբար դիմավորեց և իմ առաջին գործի մասին միայն լավ խոսքեր ասաց։ Գրունդվիգի[1] հետ միասին նա նույնիսկ ինձ որոշ դրամական օգնություն ցույց տվեց։

1 Ն. Ի. Գրունդվիգ — առաջադեմ կրոնական գործիչ։

# ՀԵՇՏ ԲԱՆ ՉԿԱՐԾԵՔ

ՏԱԹԵՎԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Դժվար գործ է դպրոցում աշխատելը: Երեսուն տարուց ավելի է ես այստեղ աշխատում եմ: Պահակ եմ... Երեսո՜ւն տարի... կմտածեք. տարիքն առած կին է, հոգնած, բեկարած, որտեղ էլ որ աշ-



խատեր, իրեն դժվար կգար... ի՜նչ մի դժվար բան է: Դուռը բացիփակի, դասից փախչողին դուրս մի թող, ուշացածներին՝ ներս մի թող, տեսնես կռիվ-դավի են անում՝ մի քիչ էլ գոռգոռա վրաները: Նրանց տեսնում ես 45 րոպեն մեկ հինգ-տաս րոպեով: Ա-

պա ժամանակդ նստի թոռանդ համար ձեռնոցներ գործի, խանգարող չկա: Գործի ու մտածի. ա՛յ, դասատուն չարչարվում է, գրել-կարդալ է սովորեցնում: Իսկ իմը խսկական մեծ կնկա գործ է,

տանը՝ ձանձրանալու տեղ, արի դպրոցում նստի, փողդ էլ ստացի... Ասում եք, էլի՞... Առավոտյա 7-ին գալիս եմ, իրիկվա 7-ին գնում: Սրանց մի ժամվա աղմուկը հերիք է, որ մարդ բժժի: Բա դասերից փախչողնե՞րը... Մեր դպրոցի երեսուն տարվա բոլոր սովո-

րողներին ես գիտեմ, հիմա էլ երեսուն տարի առաջ դպրոցն ավարտողին դեմքով ճանաչում, բարևն առնում, հալ-քեփ եմ հարցնում... Հա՛, դասերից փախչողների մասին էինք խոսում. ասում եմ, բոլոր աշակերտներին գիտեմ՝ որն է վատ սովորող ու դասերից ծուլկող, որին խսկապես պետք է դուրս թողնել: Երեխայի աչքերին նայում, հասկանում եմ մտքինը:

Սեպտեմբերի 1-ի օրը, մանրմեղ, շշկլած, կանգնում են, թե՝ հիմա ո՞ւր գնամ, ի՞նչ անեմ: Մայրերի թևերի տակ կծկվում են, վախեցած նայում աջ ու ձախ, սպասում ուսուցչուհուն: Աղջիկների կարճ, բիկ-բիկ մազերին հազիվ ձգած կապած մի մեծ ժապավեն... կարծանում ես, թե ժապավենը երկու բիլլիկ մազի վրա ո՞նց է մնում... Երեկ վարսավիրանոց տարած տղաները բարակ վզերը ձգած, ականջները երկու կողմից տնկված, շվարած կանգնած են, բայց աչքերում արդեն չարություն անելու նշաններ կան... Բա մայրե՞րը... ջահել մայրերը հագածկապած, շփոթված ու անհան-

---

*Ես հիացած էի և առաջին անգամ գլխումս միտք ծագեց. ես բանաստեղծ եմ, մարդիկ պետք է այդ մասին իմանան: Մանկական ուրախության պոռթկումով ուզում էի, որ բոլորն էլ ծանոթանան ստեղծագործությանս: Որոշեցի այն ուղարկել թատրոնի դիրեկտոր Օլսենին, համոզված լինելով, որ անհրաժեշտ է նախապատրաստել բեմականացումը: Ինչպիսի՜ երջանկություն: Ես շտապեցի Գուլբերգի մոտ և հայտնեցի այդ մասին, բայց, ի մեծ զարմանս ինձ, նա խեղամտորեն ասաց իր առարկությունները: Դա ինձ համար անհասկանալի էր. ես լռեցի ու տխրեցի և առաջին անգամ հոգուս մեջ կասկած առաջացավ մարդու նկատմամբ: Ես գիտեի, որ Գուլբերգի դրամատիկական ստեղծագործությունները հաջողություն չեն ունեցել, հետևաբար, մտածեցի ես, նա նախանձում է և չի ցանկանում, որ ես հաջողության հասնեմ: Դրանք վատ մտքեր էին մի մարդու մասին, որը շատ բարիք է գործել ինձ համար, և, ըստ երևույթին, առաջին անգամ մեղք գործեցի: Կարող եմ միայն ասել, որ այդպես ստացվեց, քանի որ անկեղծ կարծում էի, թե սքանչելի գործ եմ ստեղծել: Սակայն քանի որ Գուլբերգը առարկում էր, ես ողբերգությունը թատրոն չհանձնեցի, բայց որոշեցի գաղտնի մի գործ գրել բեմի համար, թեմա ընտրելով «Ավազակները և Վիսենբերգը» հին ժողովրդական ասքը: Մտածում էի Շիլլերի նման թատրոնի համար գրված առաջին գործս նվիրել ավազակներին: Քերականական սխալներով տառապող ձեռագիրս ուղարկեցի թատրոնի ղեկավարությանը, որը, սակայն, ետ վերադարձրեց, որպես անկատար ու խակ: Նշելով, որ ակնառու է տարրական կրթության պակասը, թատրոնի ղեկավարությունը միաժամանակ խորհուրդ տվեց, որպեսզի բարեկամներս ու ծանոթներս ինձ հնարավորություն տան տիրապետելու գիտելիքների՝ այն նպատակին հասնելու, որին ձգտում եմ այդչափ եռանդով:*

Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ

գիտ... Ուսուցչուհու հետ խոսելիս ռուսերեն խոսողը՝ ռուսերենն է խառնում, հայերեն խոսողը՝ հայերենը ու դրանից ավելի շփոթվում, անհարմար են զգում. հանկարծ ուսուցչուհին չկարծի, թե ուսումով չեն, երեխան էլ լավ ընտանիքից չի: Դասը սկսելուց առաջ երեխա կա, որ կպչում, չի պոկվում մորից: Մայրերն էլ անպայման ուզում են տեսնեն, թե որ նստարանին, որ աթոռին են նըստելու աղջիկը կամ տղան. հանկարծ քամի չփչի, դասատուի աչքից հեռու չլինի, չար տղայի հետ չնստեցնեն...

...Սեպտեմբերի 1-ին ես էլ իմ ամենալավ շորն եմ հագնում, մազերս լավ լվացած ու կրախմալած գլխաշորի տակ հավաքած, կանգնում եմ դռների մեջ: Բարձր դասարանցիները գալիս, բարև են տալիս. «Փառանձե՛մ տատի, ո՞նց ես»: Հոգիս հանողները, թե՝ «Փառանձե՛մ տատի, բարիշում ենք»: Ուզում են ասել, թե՝ մեծացել ենք, էլ չարություն անել չկա, դու էլ մեկ վրա ավելորդ մի՛ խոսի: 6-րդ, 7-րդ դասարանցիներին ճանաչել չի լինում: Ամառվա երեք ամսվա մեջ ոնց որ վկներից քաշած լինեն՝ բոյովացած, տգեղացած, թևերն ու ոտերը ամբառ-կամբառ գցելով, արագիլի պես լող-լող քայլում են, ձայներն էլ փոխած... Շատ վատ տարիք է, ո՛չ փոքր են, որ խելք հասկացնես, ո՛չ էլ մեծ են, որ իրենց խելքով շարժվեն:

...Ու ամիս ամսվա վրա, տարին տարվա վրա, աչքիս առաջ մեծանում են: Մեկ էլ մի օր տեսար, շալվարները թրի պես հարդուկած, մազերը լղոկած, կոշիկները չըմաքրած, չորացած ցեխի վրայից մաքրած, պլպլացրած, լուռ, ծանր ու մեծ, միջանցքով գալիս-գնում են, դասամիջոցներին առաջինը դասարանից դուրս գալիս, վերջինը մտնում: Արդեն հասկանում եմ... Ինքս ինձ ասում եմ. «Փառանձե՛մ, սա էլ սիրահարվեց»: Ուրախանում էլ եմ, տխրում էլ: Ախր, հազարից մեկ, որ իրար առնեն: Ախր, գիտեմ, որ առաջին սերը մեծ մասամբ կույր է գնում: Հիմա էլ մեր դպրոցում մի սիրահարված զույգ կա: Տղան մեր թոշակի անցած ուսուցչուհու թոռն է, աղջիկն էլ, տղան էլ լավ են սովորում: Մի լուրջ-լուրջ գալիս-գընում են, կարծես, աշխարհի դեմ են ելել, իրանց սերն են պաշտպանում... Պատահում է դրսից էլ է տղա գալիս, թե. «Մորաքո՛ւյր, այնինչ աղջկան՝ քրոջս, մի դուրս կանչես, բան ունեմ ասելու»: Ես

# ՌՈԲՈՏՆԵՐԻ

(Գիտա-ֆանտաստիկ

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

ս հիացած էի, Համիկը՝ ավագ քույրըս ժպտում էր, իսկ ՌԷՄ-ը... ՌԷՄ-ը կանգնել էր իր զույգ ոտքերի վրա ու նայում էր մեզ: Հետո մանկական զընգուն ձայնով ասաց.

— Ուրախ եմ ձեզ տեսնելու մեր՝ «Պրոֆտեխնիկական կրթության» տաղավարում և հաղորդելու ինձ ստեղծողների՝ պատանի տեխնիկների ողջույնը...

Այնուհետև ՌԷՄ-ը անցավ իր՝ էքսկուրսավարի պարտականությունների կատարմանը: Նա շրջում էր տաղավարում և մեզ՝ այցելուներիս ծանոթացնում ցուցանմուշներին:

Անթերի սափրված մի պապիկ, որ ինչ-որ բան պատմելու ցանկությունից հուզված, շարունակ ակնոցն էր ուղղում քթարմատին, չհամբերեց և հենց ականջիս տակ սկսեց շշնջալ.

— Ճիշտ այսպիսի մարդանման մի ռոբոտ էլ տեսել եմ Արխանգելսկում: Պատկերացնո՞ւմ եք, նա այնտեղ՝ կենտրոնական պողոտայում երթևեկությունը կանոնավորողի պարտականություն էր կատարում. Ինքս տեսա, թե ինչպես մոտեցավ փողոցն անցնել ցանկացող երեխաներին, բռնեց փոքրիկների ձեռքից և օգնեց նրանց: Վերադարձին ուղեկցեց մի ծեր կընոջ, հետո փողոցն անցնելիս օգնեց շփոթված մի քաղաքացու... Այսպես, այդ զարմանալի մարդուկը առանց տրտնջալու, մերթ հետևում էր ավտոմեքենաների կանոնավոր երթևեկությանը, մերթ օգնում անցորդներին: Տարօրինակ էր, շատ տարօրինակ... Գիտե՞ք, ես նրա պատճառով, նույնիսկ, ուշացա գընացքից...

Պապիկն ուզում էր էլի ինչ-որ բան պատմել, բայց ՌԷՄ-ը շրջվեց դեպի նա, լռեց մի պահ, ապա մեղմ ու քաղաքավարի ասաց.

— Ներեցեք, այստեղ աղմկել չի կարելի:

Պապիկը շփոթվեց, քիչ մնաց ակնոցը վայր գցի, հետո բռնեց ՌԷՄ-ի թևից և հազիվ էր արտասանել՝ «Ներեցեք, երիտասա՛րդ, այլևս չի կրկնվի» բառերը, երբ ՌԷՄ-ը կրկին շուռ եկավ դեպի նա և մարդկային պարզ ձայնով ասաց.



էլ պատասխանում եմ. «Թե քուրդ է, ասեղնագործ նախշ կասես»:

...Հարցնում ես, թե երեսուն տարի առաջվա երեխերն էին լա՞վը, թե՞ հիմիկվա: Շատ մեծ տարբերություն կա: Թե ազնիվ ասեմ, ես ասողն եմ, առաջվա երեխեքը խեղճ էին: Իմ սովորած ժամանակ ամեն մի հացի կտորը հաշված էր: Հիմա դասերից հետո հավաքարարները նստարանների տակից տոպրակներով հաց են հավաքում: Իհարկե, ասված ոչ անի մեր տեսած օրերը ետ գան, մեր թոռներն էլ, ծոռներն էլ թող կուշտ աչքով մեծանան: Բայց հացի դարդն էլ պետք է իմանան:

...Ինչ վերաբերվում է սովորելուն՝ վայ թե հիմա սովորելուն շատ կրո չեն տալիս: Առավոտը գալիս են թե չէ, սկսում են կինոյից խոսել: Առաջվա հյու-հնազանդ, ամաչկոտ երեխեքը չեն: 10-րդ դասարանցին կարճ է հագնում, ա՛յ, մինչև այստեղը...

...Մեր դպրոցում քառասուն տարվա վաստակավոր ուսուցչուհի ունենք: Շատ եմ հետը խոսում: Հարցնում եմ, թե ինչո՞ւ ամեն ինչ փոխվեց՝ էլ վախ չկա, հնազանդվել չկա: Ասում է՝ դարն է այսպես, ժամանակները փոխվել են: Ու էլ մի կարգին չի բացատրում, թե ինչից դարը փոխվեց: Մենք շատ իրար նման էինք. բոլորս գիտեինք այն, ինչ դպրոցում էին սովորեցրել... Հագածներս էլ նույնը՝ բոլորիս վրա նույն գույնը գցած չիթն էր, կերածներս էլ նույնը: Իսկ հիմիկվա երեխեքին ամբողջ աշխարհն է տված, վայե՜լ՛ք: Բայց եղածի վրա հետո պիտի ավելացնեք, որ չպակասի... Հետո ամեն գործ հո արած-պըրծած չի՞... աշխարհն էլ տան պես բան է, որ աչքդ վրան չեղավ, օրական ձեռիդ հետ մի գործ չարիր, չմաքրեցիր, քանդածը չսարքեցիր՝ կավերվի կգնա... Չարած գործեր էլ շատ կան... Ծուռ արած գործեր էլ, որ պետք է շտկվեն... Ա՛յ, հենց էս երեխեքը, որ վազվըզում են, էս մանր-մունրերն են վաղվա տերերը... Մենք գնացող ենք... Թե խսկական մարդ են, ոչ թե փուչ հատիկ, թե խելոք մարդ են դառնալու, ուրեմն դարն էլ ճիշտ կլինի: Ես էլ հանգիստ կլինեմ, իմ անցնող կյանքը, իմ երեսուն տարվա արածը զուր չի լինի: Խիղճս հանգիստ կլինի՝ վաղվա օրվա հիմքում ես էլ մի քար դրած կլինեմ...

...Զանգը տվեց... Գնա՜մ... Գընա՜մ դուռը բացեմ...

# ԸՆՏԱՆԻՔԸ
պատմվածք)

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

— Մի՛ ցավեցրեք... Ինձ ձեռք տալ չի կարելի...

Խեղճ պապիկը բոլորովին շփոթվեց. թաշկինակով սրբում էր ճակատը և փորձում գտնել ակնոցը, որը չգիտես ինչու հայտնվել էր նրա ճաղատի վրա:

Ես ու Համիկը շտապեցինք օգնել այդ համակրելի պապիկին, և երեքս միասին դուրս եկանք տաղավարից:

Պապիկը ոչ մի կերպ չէր հանգստանում, շարունակ կրկնում էր.

— Ռոբո՛տ, ռոբո՛տ... ո՞վ է հնարել դրանց...

— Ճիշտ, ո՞վ է հնարել և ի՞նչ է նշանակում ռոբոտ,— ավելացրեցի ես:

— Ըստ բացատրական բառարանի, ռոբոտ նշանակում է՝ մարդկային աշխատանքի տպավորություն գործող ավտոմատ: Առաջին անգամ իր ֆանտաստիկ պիեսում մարդկային կերպարանքով մեքենաները այդպես է անվանել չեխ գրող Կարել Չապեկը,— բացատրեց քույրս:

— Իսկ ինչպիսի՞ ռոբոտներ կան:

— Այդ արդեն չգիտեմ: Եթե շատ ես հետաքրքրվում, ապա...— ժպտաց Համիկը ու լռեց:

Հասկացա, որ մտքում ինչ-որ անակնկալ է պատրաստում: Հենց նույն երեկո Համիկն առաջարկեց գնալ իր մի ընկերոջ մոտ: Գնացինք: Քույրիկս սեղմեց դռան զանգը, այն բացվեց և մեր դիմաց հայտնըվեց մի իսկական ռոբոտ:

— Համեցե՛ք,— ասաց նա մետաղային ձայնով,— ինժեներ Գարիկը տանն է:

Ինժեներ Գարիկը ո՛չ երկարահասակ էր, ո՛չ ակնոցավոր և ո՛չ էլ մորուք ուներ, ինչպես գիտաֆանտաստիկ պատմվածքներում է լինում: Նա էլ այնպիսին էր, ինչպես Համիկի մյուս բոլոր ուսանող ընկերները: Անսովոր էր միայն նրա սենյակը. ամեն տեղ զանազան գծագրեր էին, սարքեր, կիսահաղորդիչներ... Մի խոսքով, այն ավելի շատ՝ վատ հավաքված լաբորատորիայի էր նման, քան բնակարանի:

— Հը՞, ի՞նչ կարծիքի եք, երիտասա՛րդ, դո՞ւր է գալիս ձեզ իմ լաբորատորիան,— խորամանկորեն նայելով Համիկին, ինձ դիմեց տանտերը:— Իհար-



կե, այստեղ գրական-երևակայական ռոբոտներ չկան, սակայն...— Ինժեներ Գարիկը գրպանից հանեց տարբեր գույնի կոճակներով մի տուփ և սեղմեց դրանցից մեկը: Հանկարծ բացվեց անկյունում դրված պահարաններից մեկի դռնակը և մեր առջև հայտնվեց մի ռոբոտիկ:

— Լսում եմ, հայրի՛կ,— ինժեներ Գարիկին մոտենալով, ասաց նա:

Մենք ծիծաղեցինք:

— Մեր հյուրերը, Չիչի՛, հետաքրքրվում են ձեր՝ ռոբոտների ընտանիքի պատմությամբ. դու կարո՞ղ ես բավարարել նրանց հետաքրքրասիրությունը,— ծիծաղի միջից խոսեց տանտերը:

— Հաճույքով,— ասաց ռոբոտիկը,— ուրախ եմ ձեզ հետ զրուցելու...



Ռոբոտիկի ապակե, կանաչ աչքերը փայլեցին էլեկտրական լույսով:

— Մեր՝ ռոբոտներիս նախնիները ապրել են դեռևս հին աշխարհում: Նրանք առյուծների տեսքով նստում էին Թիոֆիլիոս արքայի գահաթոռի երկու կողմերում և մռնչում, երբ կամենում էր արքան: Հին Հռոմում աղբյուրի մեջ թաքնված, նրանք դրամով ջուր էին վաճառում անցորդներին... Բայց նրանք դեռ ռոբոտներ չէին: Մարդու տեսքով մեր առաջին նախահայրը ծնվել է 1769 թվականին, հունգարացի մեքենագետ-գյուտարար Ֆարկաշ Կեմպելենի արհեստանոցում: Նա շախմատիստ էր, շրջում էր Եվրոպայով մեկ և պարտության մատնում բոլոր արքաներին:

— Այո՛, գիտեմ,— ասացի ես,— նա նույնիսկ Նապոլեոն Բոնապարտի հետ է շախմատ խաղացել...

— Ճիշտ է,— նկատեց ինժեներ Գարիկը,— սակայն նա ինքը չէր մտածում, այլ այդ անում էր շախմատի սեղանի թաքստոցում գտնվող թզուկը:

— Դա խաբեություն էր,— անվրդով շարունակեց ռոբոտիկը,— և մի անգամ հրդեհի ժամանակ մերկացվեց: Բայց այդ դեպքը չխանգարեց, որ 1890 թվականին, իսպանացի ինժեներ Տորես Կևեդոն պատրաստի առաջին շախմատային իսկական մեքենան, որը մի պարզ մեխանիկական կառուցվածք էր: Հետագայում ծնվեցին նաև ավելի բարդերը, որոնց հեռվից-հեռու ղեկավարելը էլեկտրոնիկայի, ռադիոյի և հեռուստատեսության մեր դարում այնքան էլ դժվար չէ:

— Դե՛հ, եթե մեքենան կարող է շախմատ խաղալ, ապա ինչո՞ւ չստիպել, որ նա հենց մարդու արտաքին տեսքով փոխարինի նրան նաև այլ գործերում: Այնպես չէ՞, Չիչի՛:

— Այո՛, հայրի՛կ: Հնարամիտ մեքենագետները սկսեցին ստեղծել ռոբոտների նորանոր տեսակներ: Սրանք արդեն ոչ թե խաղալիք ավտոմատներ էին, որ կարող էին ֆլեյտա նվագել, ինչպես իտալացի Մաձետիի պատրաստած 12 արիա կատարող մեխանիկական ֆլեյտահարը, կամ մեկ ուրիշ գյուտարարի ստեղծած թմբկահարը, այլ այդ նոր ժամանակների «էլեկտրական մարդիկ»՝ ռոբոտները, հակառակ իրենց ծնողների՝ անդրոիդների, մասնագիտացան որևէ օգտակար աշխատանքում: Նրանք վառում էին փարոսները, աշխատում պահեստներում, խանութներում, հաց էին թխում, վարում նավեր ու ինքնաթիռներ և էլի ուրիշ շատ ու շատ պիտանի գործեր էին կատարում: Միայն թե դրանք պարզապես ավտոմատներ էին՝ տարբեր ձևի, չափսի և միշտ չէր, որ գյուտարարները ձգտում էին դրանց մարդկային տեսք տալ: Բայց և այնպես, ստեղծվեցին նաև ոչ քիչ թվով մարդկային արտաքինին նմանվող ռոբոտներ: Ա՛յ, Անգլիայում ծնված իմ բարեկամներից մեկը շատ է սիրում երեխաներին: Նա սայլակով փոքրիկներին զբոսանքի է տանում: Ճիշտ է, նա ինձ նման աչքերի փոխարեն ունի հեռուստատեսային խցիկ, ականջների փոխարեն՝ ռադիոընդունիչներ, իսկ բերանում բարձրախոս է տեղադրված, բայց և այնպես փոքրիկները սիրում են նրան և չեն վախենում: Իսկ մեկ ուրիշ ռոբոտ, որի «հայրը» լեհ էլեկտրամեխանիկ Մարիան Յասնոխն է, արդեն ազատորեն քայլում է, երգում ու խաղում: Նա հաճույքով օգնում է գյուտարար հայրիկին, պատասխանում է բոլոր հեռախոսազանգերին: Եթե հարկավոր է «հիշել» հեռախոսային խոսակցությունը և ապա հաղորդել, նա այդ անում է անսխալ կերպով: Եվ ամենազարմանալին գիտե՞ք ինչն է, այն, որ առավոտյան ոչ թե «հայրիկն» է արթնացնում ռոբոտիկին, այլ ռոբոտիկը՝ նրան:

*— Ահա տեսնո՞ւմ եք, բարեկամնե՛րս,— ռոբոտիկին ընդմիջեց ինժեներ Գարիկը,— ինչերի են ընդունակ ռոբոտները. «սովորեցրու» նրանց ինչ կամենում ես, թեկուզ ծառեր արմատախիլ անել, և նրանք պատրաստ են...*

*— Իսկ այդպիսին արդեն կա,— շարունակեց Չիչին:— Անունը «Պեդիբուլյատոր» է: Ահարկու, վեց մետրանոց այդ պողպատե հսկան մեզ նման ունի երկու ոտք, երկու ձեռք: Արագությամբ անցնում է խիտ անտառի մացառուտներով, փետուրի պես վերցնում է վիթխարի ծառերն ու ջարդում հաստ ծառաբները:*

*— Ինչո՞ւ են այդ մետաղե «Տորք Անգեղին» ըստեղծել ճիշտ և ճիշտ մարդու տեսքով՝ երկու ոտք, երկու ձեռք...— հարցրեցի ես:*

*— Պարզվում է, Կարե՛ն, որ դա ևս արված է մտածված ձևով,— բացատրեց ինժեներ Գարիկը:— Պատճառը,— ասում են բնախույզները,— մեզ լավ հայտնի, այսպես կոչված «ձևերի համընկման» պրոցեսն է, այսինքն՝ միևնույն միջավայրում, միևնույն գործողությունը կատարող էակները իրենց ձևերով միանգամայն նման են: Այսպես, օրինակ, հող փորելու կամ ծառ կտրելու համար, ամենից լավ է հարմարված հենց մարդկային օրգանիզմը: Ահա թե ինչու նորահայտ այդ հսկան նման է մարդու: Որոշ դեպքերում, մարդակերպ ռոբոտների հանդես գալը, պարզապես, անհրաժեշտություն է: Այս ամենի հետ, էլեկտրոնային «ուղեղով» օժտված ռոբոտին կարելի է նաև «սովորելու ընդունակություն» հաղորդել, միայն թե նրան պետք է տալ սովորելու ծրագիր և նա կգործի «Նախ սովորիր, ապա կատարիր» սկըզբունքով: Որ էլեկտրոնային մեքենաները, այդ թվում և ռոբոտները, որոնք այլ բան չեն, քան նույն ծրագրավորված ավտոմատները, կարող են կարդալ, գրել, սովորել, նորություն չէ: Նույնիսկ մեր օրերում զարմանալի չէ այն, որ էլեկտրոնային մեքենան կարող է բանաստեղծություն կամ երաժշտություն հորինել նույն կանոններով, ինչպես այդ անում են բանաստեղծներն ու կոմպոզիտորները: Միայն թե նման «ստեղծագործությունները» երբեք չեն կարող հուզել մեզ, սնել մեր միտքն ու հոգին, որովհետև ռոբոտները, որքան էլ կատարյալ լինեն, չեն կարող հավասարվել իրենց ստեղծողին՝ մարդուն: Մեքենային հատուկ չէ ստեղծագործական տրամաբանությունը, հույզերը: Նրանք չունեն կամք, բնավորություն, ըզգացմունքներ: Ռոբոտները չեն կարող սիրել կամ ատել, և ընդհանրապես ոչինչ չի կարող հավասարվել մարդկային ուղեղին... Այնպես չէ՞, Չիչի՛:*

*Ռոբոտիկը լուռ էր:*

*— Ահա տեսնո՞ւմ ես, Գարի՛կ, նա համաձայն չէ քեզ հետ,— կատակեց Հասմիկը, ու մենք կրկին ծիծաղեցինք...*

## *Աբխազական առակներ*



### ԾՈՒՅԼ ԵԶԸ

Ծույլ եզին ուզում էին լծել, և նա ասաց.
— Վերևում ասված կա, չէ՞ որ ես կով եմ:
Իսկ երբ բերեցին կովկիթը, նա բողոքեց.
— Ի՞նչ հիմարն եք դուք, մի՞թե չեք տեսնում, որ եզ եմ:



### ԱՅԾ՞Ն ՈՒ ՈՉԽԱՐԸ

Մի անգամ ոչխարը ցատկեց առվի վրայով և նրա դմակը բարձրացավ՝ ի ցույց հանելով տակը եղածը:

Տեսնելով այս՝ այծն սկսեց քրքջալ: Երբ նրան հարցրին, թե ինչո՞ւ է ծիծաղում, այծը պատասխանեց.

— Ախր, ինչպե՞ս չխնդամ, ես տեսա ոչխարի մերկ հետույքը:

Ձին, որ հարց տվողն էր, ամոթանք տվեց այծին.

— Դու մի անգամ տեսար ոչխարի մերկությունը և սկսեցիր ծաղրել նրան, իսկ ինքդ ցատկոտում ես՝ պոչդ միշտ վեր տնկած, և քեզ վրա ոչ ոք չի ծիծաղում:



### ՀԵՌԱՏԵՍ ԱՎԱՆԱԿԸ

Ավանակը, որ արածում էր բացատում, տեսավ կովը քայլում է քարափի եզրով ու տագնապի աղաղակ բարձրացրեց:

Նրան հարցրին.

— Ինչո՞ւ ես գոռում այդպես տագնապահար:

Եվ ավանակը պատասխանեց.

— Կովի հիմարության երեսից ես եմ տուժելու... Չէ՞ որ, եթե նա ցած ընկնի ու ջարդվի, նրա դիակը իմ մեջքին պիտի դնեն և ես պիտի քարշ տամ նրան: Հենց սա էլ ինձ անհանգստացնում է:



### ԽԵԼԱՄԻՏ ԳՈՐՏԸ

Ուժգին հեղեղներից գետը ողողեց ափերը: Ալիքը խլեց գորտին ու տարավ դեպի ծովը: Որքան էլ ջանաց գորտը՝ չկարողացավ դիմադրել հոսանքին, և նա հառաչեց ու ասաց.

— Ինչ լա՜վ եղավ, ես վաղուց էի փափագում լողալ ծովի ջրերում:

*Թարգմանություն ՎԱՆ ԴԵՎԿԱՆՅԻ*



# ՍԱՀՄԱՆԻ ՎՐԱ

*ՎԻԿՏՈՐ ԲԱԼԱՅԱՆ*

«Է՜խ, Կո՛լկա, Կո՛լկա, խոստացար նամակիս շուտ պատասխանել, բայց երկարեց լռությունդ: Չլինի՞ թե դպրոցում գործերդ վատ են, ախպե՛րս, հո հանրահաշվից էլի չե՞ս դժվարանում: Տե՛ս, հա՜, ինձ ամոթով չանես: Այստեղ ես պարծենում եմ, թե եղբայրս իրենց դասարանի առաջավորներից է, պարապում է ըսպորտով, ինձ նման ուզում է սահմանապահ դառնալ:

Այստեղ՝ Հայաստանում այժմ չորս բոլորը կանա՜չ-կանաչ է: Այստեղ բնությունն այնպես չէ, ինչպես մեզ մոտ՝ Սիբիրում: Մեզ մոտ ձմեռն է գեղեցիկ, իսկ այստեղ՝ գարունը:

Կարող ես ինձ շնորհավորել, ես արդեն սերժանտ եմ, մի ամբողջ ջոկ եմ ղեկավարում: Կո՛լկա, վերջացնում եմ նամակս, ուրիշ բան չունեմ գրելու: Դու գրել էիր, որ ուզում ես իմանալ և պատմել ձեր դասարանցիներին, թե ինչպես ենք լրտես բռնում...»

— Գրիգո՛րի, հո մինչև լույս չե՞ս նստելու, էլի բանաստեղծություննե՞ր ես գրում,— վերմակի տակից երևաց պեպենոտ մի դեմք:

Գրիգորի Կուզմինը ցած դրեց գրիչը:

— Ի՞նչ բանաստեղծություն, եղբորս եմ նամակ գրում: Արկածասեր տղա է: Հոգիս հանել է, թե՝ մանրամասն գրիր լրտեսների մասին: Ի՞նչ գրեմ, գրելու բան չկա, իսկ նա երևի նեղացել է, նամակիս չի պատասխանում: Դու ինչո՞ւ չես քնում, Վասի՛լի:

— Լույսը հանգցրո՛ւ, գիտես, որ լույսի տակ չեմ կարող քնել,— նորից երևաց Վասիլիի պեպենոտ դեմքը և իսկույն անհետացավ վերմակի տակ:

— Հիմա վերջակետ կդնեմ,— ասաց Կուզմինն ու շարունակեց նամակը.

«Մեզ մոտ, Կոլկա, դեռ քեզ հետաքրքրող դեպք չի եղել, ու լավ էլ կլինի, որ չլինի, որովհետև...»

Այստեղ սերժանտ Կուզմինի նամակն ընդհատվեց, որովհետև հնչեց տագնապի ազդանշան: Նույն վայրկյանին դռան մեջ երևաց հերթապահը.

— Տագնա՜պ, բոլորը ոտքի՜:

Մի քանի րոպե հետո, սերժանտ Կուզմինի ձեռքում գրիչի փոխարեն ավտոմատ էր: Դոփդոփելով, իրար ետևից դուրս եկան սահմանապահները: Գարնանային մեղմ զեփյուռը ներս էր խուժել բաց դռնից ու կարծես խաղ էր անում սեղանին մնացած կիսատ նամակի հետ...

Հաջորդ օրը, երեկոյան, Գրիգորի Կուզմինը նստեց սեղանի մոտ՝ ավարտելու եղբորն ուղղած նամակը: Նա ցանկացավ ջնջել վերջին տողերը, սակայն մի պահ տատանվելուց հետո շարունակեց. «Նամակս երեկ եմ սկսել, կիսատ էր մնացել, որովհետև տագնապ տրվեց մեզ մոտ: Փորձնական տագնապներ շատ են լինում, սակայն այս մեկը իսկական էր: Գիշերվա ուշ ժամին սահմանի խախտում էր եղել: Իսկույն շրջապատեցինք այդ տեղամասը, սակայն մութը խանգարում էր, լուսարձակների լույսը քիչ էր գործելու համար: Այդպես պետք է սպասեինք մինչև լուսաբաց, որպեսզի սկսեինք տեղամասի «սանրումը»: Շուրջը լռություն էր, յուրաքանչյուրս շունչը պահած ականջ էր դնում, թե արդյոք մոտակայքում չի՞ լսվում որևէ շրշյուն, չի՞ շարժվում որևէ մեկը: Կանաչն



արդեն բավական աճել է ու դըժվար է խոտերի մեջ թաքնված մարդուն նկատել: Բայց մեր հետախույզ շների ո՞ւր կարող էր փախչել սահման խախտողը: Իմ Բորն էլ անհանգիստ շարժումներ էր անում, ուզում էր առաջ նետվել, սակայն կարգադրված էր ըսպասել: Մեկ էլ ետևից ինչ-որ ձայն լսեցի. սիրտս արագ բաբախեց, իսկույն շրջվեցի և առաջ պարզեցի ավտոմատս: Իմ առջև լուռ ծիծաղում էր պեպենոտ Վասիլին:

— Վախեցա՞ր,— շշնջաց նա:

— Պետք է զգույշ լինել, ի՞նչ վախենալու բան կա,— պատասխանեցի ես:

— Շտապ, ուղեկալի պետի մոտ:

Ես, իմ ընկերը՝ Վահան Հարությունյանը, և Բորը զգուշորեն դուրս եկանք թաքստոցից՝ մեր տեղը զիջելով Վասիլիին և Անտոնին:

— Սերժանտ Կո՛ւզմին և շարքային Հարությունյա՛ն, ձեզ հանձնարարվում է հսկել գյուղի արևմըտյան մասը: Լույսը բացվելուն պես՝ ուշադիր զննեցե՛ք այդ տեղամասը, զգուշացրե՛ք բնակիչներին, որպեսզի անծանոթ մարդ նկատելուն պես՝ անմիջապես հայտնեն ձեզ:

Ուղեկալի պետից ստացանք այս հանձնարարությունն ու ճանապարհ ընկանք դեպի գյուղ: Հարմար թաքստոց ընտրելով, սպասեցինք լուսաբացին: «Եթե սահմանը խախտողին հաջողվել էր դուրս գալ սահմանային գոտուց,— մըտածեցի ես,— ապա նա չի կարող հեռու գնալ, որովհետև դժվար կլիներ մթան մեջ կողմնորոշվել»:

Աղջամուղջը նոր-նոր ցրվել էր, երբ հեռվում երևաց հազիվ նշմարելի, մի շարժվող կետ:

— Բո՛ր, Բո՛ր, վերցրո՛ւ,— ցույց տալով կետը՝ բաց թողեցի շանը: Ես և Վահանը վազեցինք այդ ուղղությամբ: Բավական վազելուց հետո, մեր տեսողությունից կորցրինք նշմարած կետը: Նրան կորցրել էր նաև Բորը: Նա հոտոտում էր գետինը և փնչում: Հավանաբար սահման խախտողը իր հետքերը կորցնելու նպատակով ետևից հոտավետ փոշի էր շաղ տվել: Ես և Վահանը շվարած իրար նայեցինք, ո՞ր կողմը գնալ:

Հևասպառ վազելով մոտեցանք գյուղին, ոչ մի կենդանի շունչ չէր երևում: Հանկարծ Բորը պոկվեց ձեռքիցս, առաջ սլացավ ու անհետացավ մի փոքրիկ փոսում: Լսվեց կրակոց, շունը կլանչեց: Բաց թողնելով մի կրակահերթ՝ առաջ նետվեցի: Վահանն առաջ անցավ ինձանից: Ես հասա այն ժամանակ, երբ Վահանը արդեն զինաթափ արված թշնամու վրա բարձրացրել էր ավտոմատը և ուզում էր կրակել:

— Ի՞նչ ես անում,— բղավեցի ես:

— Հապա մի տե՛ս, թե սրիկան ինչպե՛ս է վիրավորել Բորին:

Խեղճ Բորը չնայած արնաքամ էր լինում, բաց չէր թողնում սահման խախտողին:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Հարկավոր է դրան կենդանի տանել ուղեկալ,— հիշեցրի Վահանին,— կապի՛ր ձեռքերը:

Ես էլ վիրակապով փաթաթեցի Բորի ուսը:

Երբ ուղեկալ հասանք, տագնապը վերջացել էր: Եղեգնուտներում հայտնաբերվել էր մեկ ուրիշ սահման խախտող ևս: Մերոնք երկրորդի մասին ոչ մի գաղափար չունեին: Ուղեկալի պետը մեզ շնորհակալություն հայտնեց: Ասում է՝ պարգևատրման պիտի ներկայացնի: Բացի այդ, նա ինձ էլ, Վահանին էլ արձակուրդ է խոստացել: Հենց որ արձակուրդ ստացա, կգամ, սիրելի՛ Կոլկա, և այն ժամանակ ավելի մանրամասն կպատմեմ քեզ: Այժմ դու գո՞հ ես եղբորից, Կո՛լկա, շուտ կպատասխանե՞ս նամակիս...»



# ԵՐԵՎԱՆԻ ՊԱՏԿԵՐԱ



Լուսանկարից նայող փոքրիկը վեցամյա նկարիչ Արթուր Մելքոնյանն է: Տպագրված նկարները մանկական պատկերասրահում ցուցադրված նրա աշխատանքներից են:





«Քաղաքամայր Երևանի կենտրոնում հիմնվում է մանկական պատկերասրահ: Ուրեմն, սիրելի՛ փոքրիկներ, դուք այսուհետև կունենաք ձեր արվեստի օջախը, ձեր տունը: Եվ ինչպես ծիծեռնակները չեն մոռանում իրենց բույնը, ամեն գարնան շինում, նորոգում են այն, այդպես էլ դուք, մշտապես կթարմացնեք, կհարստացնեք ձեր բույնը և կդարձնեք արվեստի իսկական, ձեր անկեղծ ապրումներով շնչավորված մի գանձարան: Միշտ հիշեք, որ ձեր սև ու խոշոր աչքերով մեր բնությունն է խոսում, և նկարելիս՝ գույներով խոսելիս, հարազատ մնացեք մայր բնությանը»:

Այս խոսքերը վարպետ Մարտիրոս Սարյանն է ասել մանկական պատկերասրահի բացման առթիվ: Աբովյան փողոցի վրա սանեղծված մանուկների թանգարանը այսօր արդեն հինգ տարեկան է: Այդ հինգ տարիների ընթացքում կազմակերպվել են յոթանասունից ավելի ցուցահանդեսներ: Իրենց գործերով այստեղ հանդես են եկել ո՛չ միայն Հայաստանի ու Սովետական Միության տարբեր հանրապետությունների, այլև դեմոկրատական երկրների, Ֆրանսիայի, Անգլիայի, Ամերիկայի, Իտալիայի փոքրիկ նկարիչները:

Պատկերասրահը կապ է պահպանում Երևանի պիոներ-պալատների, մանկապարտեզների ու դպրոցների հետ, խրախուսում է նկարչասեր երեխաներին, բացում նրանց անհատական ցուցահանդեսները: Այստեղ կազմակերպվող գեղագիտական դաստիարակության պարապմունքների հետ անց են կացվում հետաքրքիր միջոցառումներ, որոնցից ամենակարևորները ամեն տարի ձեռնարկվող երեք տոներն են:

Սեպտեմբերի 1-ին, ուսումնական տարվա առաջին օրը, պատկերասրահում բացվում է Երևանի 78 դպրոցի «Հմուտ ձեռքեր» խմբակի (ղեկավար Սաթենիկ Թոփույան) ցուցահանդեսը: Այդ օրը տոնականորեն կարդարվում են դահլիճները: Դպրոցի երեխաներն իրենց նոր ու հիանալի աշխատանքներով հաճելի անակնկալ են մատուցում այցելուներին:

Հունիսի 1-ին, երեխաների պաշտպանության միջազգային օրվա առթիվ կազմակերպված ցուցահանդեսով պատկերասրահի հյուրն են դառնում աշխարհի տարբեր երկրների նկարչասեր երեխաները:

Յուրաքանչյուր տարի մայիսի 20-ին, եթե գալու լինեք Երևանի օպերային թատրոնի հրապարակը, դուք այնտեղ կտեսնեք հարյուրավոր փոքրահասակ-

# ՄԱՆԿԱԿԱՆ ՍՐԱՀԸ





ների, որոնք ուսուցիչների հսկողությամբ կավիճով ուղղակի նկարում են ասֆալտի վրա: Այդ միջոցառումը ավետում է ուսումնական տարվա ավարտը:

— Արվեստը հոգևոր սնունդ է մարդու համար, այն հարստացնում է մարդու ներքնաշխարհը, ընդլայնում մտահորիզոնը: Նկարել սիրում են բոլոր փոքրիկները: Մեր նվիրական պարտքն է վարգացնել նրանց գունայգացողությունը, բարձրացնել ճաշակը, սերը գեղեցիկի նկատմամբ,— ասում է պատկերասրահի տնօրեն Ժաննա Աղամիրյանը:

Երևանի մանկական պատկերասրահը, այո՛, երեխաների գեղագիտական դաստիարակության իսկական դարբնոց է դարձել:

ՇԱՀԵՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

## *Դեպքեր նշանավոր մարդկանց կյանքից*

### ԱՐԱԳ ՀԱՇԻՎ

Իտալացի մաթեմատիկոս Ինանդին մանկուց կարողանում էր մի հայացքով ուզած բանը հաշվել: Մի անգամ նա դիլիժանսով Հռոմից գնում էր Չիվիտկավեկկի: Երբ կառքը անցավ ոչխարի հոտի մոտով, Ինանդին հարևանցի նայեց դուրս և նկատեց.

— Հազար չորս հարյուր վաթսուներկու ոչխար է:

— Դուք այդպես արագ հաշվեցի՞ք,— թերահավատությամբ ասաց ուղեկիցներից մեկը:

— Դա շատ հեշտ է: Ես հաշվեցի ոտքերը և բաժանեցի չորսի,— պատասխանեց մաթեմատիկոսը:

### ԿՈՐԱԾ ՍԱՎԱՆԸ

16-րդ դարի նշանավոր իտալական նկարիչ Պաոլո Վերոնեզեն իր ճանապարհորդություններից մեկի ժամանակ մի քանի շաբաթ ապրում է մի ծայրամասային տան մեջ: Երբ հրաժեշտ է տալիս ու գնում, պարզվում է, որ նրա զբաղեցրած սենյակում պակասում է մի սավան: Տան՝ տերերի վրա դա շատ տհաճ տպավորություն է թողնում: Բայց որքան է լինում նրանց զարմանքը, երբ մի անկյունում գտնում են մի մեծ փաթեթ, դա ներկայացնում էր մի հրաշալի նըկար՝ «Ալեքսանդրը Դարիայի վրանում»: Նկարն արված էր կորած սավանի վրա: Նկարիչը սիրալիր տան տերերին հյուրընկալության համար շնորհակալ լինելու այդ ձևն էր ընտրել:

### ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԲՈՒԺՈՒՄ Է

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ երաժըշտության ռիթմը և տեմբրը ազդում են սրտի աշխատանքի վրա: Օրինակ, արագ ռիթմը սրտի կծկումները մեկ րոպեում ավելացնում է 4—5 զարկով: Երաժշտության ազդեցության տակ փոփոխվում է մարզիկների զարկերակի հաճախականությունը, արյան ճնշումը, մաշկի ջերմությունը: Երաժշտությունը պայծառացնում է հիշողությունը, ուժեղացնում է ժամանակի զգացողությունը:

Ներկայումս որոշ հիվանդություններ բուժելու համար օգտագործում են երաժշտություն: Նույնիսկ առաջացել է «երաժշտական թերապիա» տերմինը:




*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

Մեկնելու էի Լիբանան՝ տուրիստական ուղևորության:

— Եթե լիբանանյան մայրիները չտեսած վերադառնաս, նշանակում է Լիբանան չես էլ գնացել,— ասաց կենսաբան ընկերս:

Եվ ահա 1972 թվականի հունվարի 4-ն է, արևոտ ու պայծառ մի օր: Ավտոբուսով գնում ենք Վեշարեի նշանավոր արգելավայրը: Անցնում ենք Միջերկրական ծովի ափով: Ձիթապտղի ծառե՛ր, ձիթապտղի ծառե՛ր: Նարնջենիներ՝ ոսկեգույն պտուղներով ծանրաբեռնված, խոնարհվել են մինչև գետին, լիմոն ու մանդարին: Հունվարը բոլորովին էլ այն ամիսը չէ Լիբանանի համար, ինչ որ մեզ համար՝ Հայաստանում:

Ծովից հեռանում ենք. ճանապարհը թեքվում է դեպի լեռները, որոնք ինչ-որ ժամանակ ծածկված են եղել մայրու խիտ անտառով: Ոլորապտույտ ճանապարհով բարձրանում ենք վեր, և գիդը մեզ ցույց է տալիս լեռների մեջ ծվարած մի վանք ու պատմում. «Այդ վանքում մեն-մի ճգնավոր է ապրում: Նա դուրս չի գալիս արևի լույսի: Շրջապատի գյուղերից բարի մարդիկ նրան տանում են հաց, մեղր և միրգ: Նա դրանցով է սնվում և... գուշակում է»:

Շարունակում ենք բարձրանալ: Ահա մի նեղ արահետ, որ կոչվում է «էշի ճանապարհ»: Պատմում են, որ շատ տարիներ առաջ, մի կույր ճգնավոր էշով գնացել է լեռը՝ աղոթելու: Էշը բնազդով ճամփա է բացել: Առաջացել է ահա այս կածանը: Իսկ հետո, երբ երկրաբանները եկել են այստեղ հետազոտելու, փորձել են գտնել գագաթը տանող ամենակարճ ճանապարհը: Փնտրել են շատ երկար, բայց ավելի հարմար ճանապարհ, քան էշի ոտնահետքերից առաջացած կածանն է, չեն գտել:

Մինչև մայրիների պուրակը դեռ բավական ճանապարհ կա, և մենք զմայլված դիտում ենք լիբանանյան հռչակավոր դարավանդները. դրանք աստիճան առ աստիճան ձգվում են դեպի վեր, ընդհուպ մինչև անտառակի փեշերը:

Իրար հաջորդող գյուղերից վերջինը մնում է 1550 մետրի վրա:

Ավտոբուսը կանգ է առնում. մենք գտնվում ենք Բեյրութից 120 կիլոմետր հյուսիս-արևմուտք, ծովի մակերևույթից 2000 մետր բարձրության վրա: Աչքերս կկոցում եմ ձյան պայծառ փայլից, չափազանց հեռու և անիրական են թվում լեռան ստորոտում մնացած նարնջի ոսկեվառ պլանտացիաները:

Սա է Վեշարեի արգելավայրը, ուր տակավին կանգուն են լիբանանյան հռչակավոր մայրիները: Ծառերից մի քանիսը 4000 տարեկան են, մի քանիսը՝ 5000, 6000:

Հին դարերից սկսած լիբանանյան մայրիների մասին և՛ լեգենդներ, և՛ ճշմարիտ շատ պատմություններ են գրվել: Փյունիկեցիները Եգիպտոս էին արտահանում մայրու թանկարժեք խեժ: Երուսաղեմի սուրբ Սողոմոնի տաճարը կառուցված էր լիբանանյան մայրու փայտով: Պարսկաստանում, Եգիպտոսում, Փյունիկիայում, Ասորեստանում, Բաբելոնում տները, պալատները, նավերը կառուցում էին Լիբանանի մայրու անտառներից բերված շինանյութով:

Դարեր են հոսել, և անբռնելի այդ ժամանակի մեջ բարձրուղեշ ծառերն իրար ետևից տապալվել են ցած, կացնի հարվածների տակ ճյուղազրկվել, մասնատվել ու սայլերով, ուղտերով, նավերով արտահանվել երկրից-երկիր:

Ոչնչացումից հրաշքով փրկվել են 400 մայրի: Մեծ ճակատամարտից ազատված զինվորների նման նրանք կանգնած են կողք-կողքի, իրենց հազարամյա արմատներով ամուր կառչած մայր հողին:

Եվ ինչու չէ, որ նրանք՝ այդ 24—27 մետրանոց լայնաբուն հսկաները համարվում են անմահության, ուժի և հզորության խորհրդանիշ:

Մայրի—բարոմետր. այսպես էլ են կոչվում: Ուշադիր նայելիս կտեսնեք, որ ճյուղերն ուղղահայաց են բնին: Իսկ եթե նկատեք, որ թեթևակի խոնարհվել են, նշանակում է ձյուն է գալու: Խոնարհվել են, որպեսզի ձյունը սահի-թափվի և ճյուղերը չկոտրվեն: Ինքնապաշտպանական բնազդ:

Փորձում են բազմացնել, ցանում են սերմերը՝ ծլում է հարյուրից մեկ-երկուսը, չափազանց դանդաղ է աճում՝ տարեկան 2 սանտիմետր:



Եվ ինչպիսի՜ մեծարանք փրկված մայրիների հանդեպ: Երկրի պետական դրոշի, գերբի և դրամների վրա մայրի է նկարված:

Պուրակը պահպանվում է պետական օրենքով:

Մայրի բառը իբրև հատուկ անուն գրվում է մեծատառով:

Տուրիստներին հրամցվող հուշանվերների մեծ մասը զարդարված են մայրու պատկերով:



Չորս հարյուր ծառ. ընդամենը չորս հարյուր և ոչ ավելի:

Անցածը վերադարձնել հնարավոր չէ: Եվ ահա մենք կանգնած ենք 5000 տարեկան, հիասքանչ, ճյուղերը վեհորեն չորս բոլորքը պարզած, իրոք ծառաստված կոչվելու իրավունքը նվաճած բնության մի հուշարձանի առաջ: Այնպես է թվում, որ ահա մեզնից որևէ մեկը կամ թեկուզ բոլորս միասին բարձրաձայն կդիմենք նրան, լսելու սոսափյուն-զրույցը, կդիմենք մեկին, որն ականատես է եղել դարավոր անտառի ոչնչացմանը, որի ստվերով անցել են ժողովուրդնե՜ր, ժողովուրդնե՜ր, արքանե՜ր և զորավարնե՜ր:

5000 տարեկան, 6000 տարեկան, և ձյունածածկ այս գագաթում 400 ծառ իբրև վկա, իբրև մեղադրանք, իբրև բնության ու կյանքի հարատևման խորհրդանիշ, իբրև ուժի, անմահության, հզորության, նաև գեղեցկության խորհրդանիշ:

Մայրիների ապաստարանից ներքև լեռնալանջերն են. տեղ-տեղ Միջերկրական ծովի մակերևույթին համարյա ուղղահայաց: Ո՞վ կարող է ասել, ինչքա՞ն ժամանակ են դրանք մերկ մնացել, իրենց «բնակիչներին» կորցնելուց հետո: Եվ ինչքան են մարդիկ քրտինք թափել, մինչև որ լանջերն այսօրվա տեսքն են ստացել:

Իսկ այսօր մայրիների անտառակը տանող ոլորապտույտ ճանապարհն անցնում է սքանչելի դարավանդների կողքով: Ուզածդ լեռնային երկրի բնակչի նախանձը կարող են շարժել այդ դարավանդները, որոնք, սակայն, հեշտությամբ չեն ստեղծվել: Տեղացիները քարե հենապարիսպներ են կառուցել, քթոցներով հող են կրել և խաղողի վազեր, թզի ու խնձորի ծառեր են տնկել:

Վեչարեի արգելավայրից վերադառնալիս, լեռը գրկող դարավանդներով իջնելիս, ոչնչացած մայրիների հանդեպ ափսոսանքը, և ցավը, և զայրույթը ինչ-որ չափով մեղմանում էր, որովհետև աստիճան առ աստիճան մեզ ուղեկցում էր հսկայական մի ամֆիթատրոն, որտեղ ոլունքների նման շարված էին թզենիները, խնձորենիներն ու խաղողի վազերը:

## *Սեպտեմբերի 21-ը անտառի աշխատողների օրն է*

# ԱՆՏԱՌԱՊԵՏԸ

Դիլիջանի պետարգելոցի Գոշի անտառապետության անտառապետ Անուշավան Բաքինյանի հետ դուրս գալով Սալահ գյուղից, անտառամիջյան ճանապարհով գնում ենք դեպի Ախնաբաթի վանքը: Ճանապարհի մոտով խոխոջում է Մուրղուզի լեռների փեշերի սառն աղբյուրներից հյուսված գետակը:

— Եթե ծարավ ես, խմի՛ր, բայց աշխատիր կարմրախայտ կուլ չտալ,— կատակով ասում է Անուշավանը, ապա ավելացնում.— Սալահ գյուղի բնակիչներն էլ են այս ջրից խմում:

— Իսկ ի՞նչ է այս գետակի անունը:

— Ախնաբաթ: Վանքի անունն է կրում: Ի դեպ, այս ձորն էլ, շրջակա անտառներն էլ Ախնաբաթի անունով են կոչվում:

Քանի բարձրանում ենք վեր, անտառը այնքան խտանում, կուսական տեսք է ստանում: Իրար հարևանությամբ ձորակներն ի վեր դեպի լույսն են ձգվել հաճարենիները, բոխիները, ընկուզենիները, թեղիները:

— Հարո՞ւստ է ձեր կենդանական աշխարհը,— հարցնում եմ:

— Շատ: Մեր անտառապետությունը փռված է 8,5 հազար հեկտարի վրա և կենդանական ու բուսական հարուստ աշխարհ ունի: Անտառներում մրգատու ծառեր շատ կան՝ տանձենի, խնձորենի, սալորենի, զկռենի, ընկուզենի, հաճարենի: Դրա համար



էլ մյուս անտառապետություններից կենդանիները փախչում գալիս են այս կողմերը:

— Իսկ ի՞նչ կենդանիներ կան:

— Կովկասյան ազնիվ և ուսուրական բծավոր եղջերուներ, տեղական եղնիկներ, արջեր, նապաստակներ, աղվեսներ, վայրի խոզեր. ո՞ր մեկը թվես, հա կան: Հենց միայն երեք տարի առաջ ուսուրական 102 բծավոր, կովկասյան 19 ազնիվ եղջերուներ և

*Թևավոր խոսքեր*

# ՍԻՐԱՄԱՐԳԻ ՓԵՏՈՒՐՆԵՐՈՎ ԱԳՌԱՎԸ



Ռուս մեծ նկարիչ Վ. Սերովը այսպես է պատկերազարդել Ի. Ա. Կռիլովի առակներից մեկը. երեք հպարտ սիրամարգ զարմացած ու ծաղրական հայացքով նայում են իրենց մեջ խցկված տարօրինակ կերպարանքին՝ կարճ թաթերով ագռավին, որի նվազ մարմնի ետևից քարշ էր գալիս երկար, բայց քնձռոտ, մի կերպ կցած-կցմցած սիրամարգի պոչը.

Եվ սիրամարգի փետուրներով զարդարուն պոչով,
Ագռավը նրանց հետ ելավ ճեմելու...

Ըստ առակագրի, ագռավի այդ գյուտից ոչինչ չի ստացվում: Նորաձևության սիրահար ագռավը հաջողություն չի ունենում:

Եվ սրա վերջը այն եղավ,
Որ ագռավներից ետ մնաց,
Ու սիրամարգ էլ չդառավ...

Այս պատկերավոր արտահայտության պատմությունը ապրել է դարեր: Դեռևս հռոմեացի կատակերգակ Լուկիանոսն ասել է. «Ագռավը ուրիշի փետուրներով է զարդարվում»: Տարաբախտ ագռավի «սիրամարգի փետուրները» հաճախ են հիշվում միջնադարյան առակներում ևս: Հնում «սիրամարգի փետուրներով ագռավ» ասելով հասկանում էին հանկարծ մարդամեջ ընկած, սնապարծ մարդ, որն աշխատում է թափանցել իր համար օտար և առավել «բարձր» հասարակության շրջանները: Այժմ մենք այդպես ենք անվանում նրանց, ովքեր ուզում են ավելի լավ ու խելացի երևալ, քան իրականում կան:

Այդպիսի մարդը, որ, ինչպես ասում են «զարդարվում է ուրիշի փետուրներով», ավելի խեղճ ու ծիծաղելի է երևում:

---

*59 վայրի խոզեր ներմուծեցինք:*

*Անուշավանի հետաքրքիր պատմություններով տարված, հասանք Ախնաբաթի վանքը: Ճարտարապետական մի գողտրիկ կոթող է դա՝ կառուցված 12-րդ դարում: Լավ է պահպանվել: Միայն տանիքին, գմբեթից ներքև մի քանի փոքրիկ ծառեր են դուրս եկել, որոնք հետագայում կարող են վտանգավոր դառնալ պատերի համար:*

*Անուշավանը ձեռքը մեկնելով դեպի պատի քարերի արանքից դուրս եկած փոքրիկ շիվը, ասաց.*

*— Սա նշանավոր կարմրածառն է, թե ինչպես է այստեղ աճել, մարդ զարմանում է: Գիտնականների ասելով, կարմրածառը մեռնող ծառատեսակ է, նոր սերունդ չի տալիս:*

*— Ինչո՞ւ, սերմ չունի՞:*

*— Ունի, այն էլ ինչպիսի՜: Նրա պտուղները, որ դեղնակարմրավուն են, հասունացած ժամանակ մանր ուլունքի ձև ունեն, պատերազմի տարիներին հարևան գյուղի բնակիչները օգտագործում էին մեղրի տեղ: Կուզե՞ք տեսնել կարմրածառերի անտառը,— հանկարծ դիմեց ինձ՝ նկատելով մեծ հետաքրքրությունըս կարմրածառի նկատմամբ:*

*— Այո՛, իհարկե:*

*Անցնելով գետակը, թեքվեցինք դեպի հարավ-արևմուտք: Ծմակում մեր ուշադրությունը գրավեց առանց ճյուղերի մի ծառ, որի բունը ամբողջովին թավիշ կանաչով էր պատված: Նրանից 20—30 մետր վերև ընկած էր մոտ 1,5 մետր տրամագիծ ունեցող, 4—5 մետր երկարության հաճարենու հսկա բունը՝ դարձյալ առանց ճյուղերի:*

*— Գիտե՞ք ընկեր, թե ինչ ողբերգություն է կատարվել,— նորից հարցրեց Անուշավանը և, չսպասելով իմ պատասխանին, ինքը շարունակեց.— փոթորիկի ժամանակ հաճարենին ճռճվել է, կոտրվել և ուղիղ ընկել ներքևի կարմրածառի վրա, ջարդել, փշրել նրա ճյուղերը: Ինչպես տեսնում եք, հաճարենին չորացել է, իսկ կարմրածառը՝ ոչ: Վերքերը լավացնելու համար բունը կանաչով է պատել: Նայում ես կանաչին, ասես վիրակապ լինի:*

*— Հաճարենու բնից երևում է, որ այս գարնանն է կոտրվել, և բավականին մեծ ծառ է եղել:*

*— Այո, մեծ ծառ էր, 30—35 մետր բարձրության: Մեծ քանակությամբ ածուխ տվեց:*

*— Ի՞նչ ածուխ:*

*— Սովորական փայտածուխ: Այնքան որ եկանք ու մի ընկած ծառ չտեսանք, ձեզ չհետաքրքրե՞ց, թե այս դարավոր անտառում ինչպե՞ս է, որ ընկած ծառեր չկան:*

*Կտրված հաճարենուց վերև սկսվում է կարմրածառերի անտառը: Սլացիկ են կարմրածառերը, գեղեցիկ: Ամենից երկարա-*

# ԱՇԽԱՐՀԻ ՈՒԹԵՐՈՐԴ ՀՐԱՇԱԼԻՔԸ

Ամեն անգամ, երբ երկրի վրա հայտնվում է ինչ-որ զարմանալի ու վիթխարի մի բան՝ հսկայական ջրատար, որ առաջներում չեն տեսել, բարձրաբերձ շենք, որին հավասարը չկա կամ էլ արվեստի հանճարեղ ստեղծագործություն, սկսում են խոսել աշխարհի ութերորդ հրաշալիքի մասին: Ինչո՞ւ անպայման ութերորդ և ոչ երրորդ կամ յոթանասունհինգերորդ: Սա հին պատմություն է:

Հին-հին դարերում մեր նախնիները երկրագնդի վրա հաշվում էին ճարտարապետության ու քանդակի առավել զարմանալի յոթ ստեղծագործություն. Մավզոլ արքայի դամբարանը՝ Հալիկառնասում, Եգիպտական բուրգերը, Կոլոս Հռոդոսցու վիթխարի արձանը, մեծն Ֆիդիասի կերտած Զևսի արձանը՝ Օլիմպիայում, Ալեքսանդրիայում Փարոս կղզու փարոսը, իր բարձրությամբ հնադարյան բոլոր շենքերը գերազանցող Արտեմիսի տաճարը Եփեսոսում և կախված այգիները Բաբելոնում, որ անհիմն կերպով վերագրում են Շամիրամ թագուհուն: Ավելի ուշ, «աշխարհի յոթ հրաշալիքներ» արտահայտությունը ձեռք է բերում առավել ընդհանուր և անորոշ նշանակություն, այժմ այդպես կոչում ենք ինչպես մարդու, այնպես էլ բնության կողմից ստեղծված բոլոր հռչակավոր տեսարժան կերտվածքները:

Հետաքրքիր է, որ 18-րդ դարում ֆրանսիական և անգլիական գրողները աշխարհի հրաշալիքների թվին ավելացնում են ևս յոթը՝ չինական վիթխարի պարիսպը, ալեքսանդրյան ստորգետնյա անցուղիները, Պիզա քաղաքի թեքված աշտարակը Իտալիայում, Նանկինի հախճապակե աշտարակը, Սողոմոնի տաճարը և սուրբ Սոֆիայի տաճարը Ստամբուլում:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



*հասակը 20—25 մետրի է հասնում: Ծառերից ամենատարեցները՝ 1000 տարուց ավելի կյանք ունեն, ավելի հին են, քան Ախնաքաթ վանքը: Անտառը լոկ կարմրածառերից չի բաղկացած՝ ուրիշ ծառատեսակներ էլ կան, բայց իշխողը այստեղ կարմրածառն է, որը գետնին տապալվելուց հետո էլ, նույնիսկ հողի տակ, չի փտում, պահպանում է իր ամրությունը դարեր շարունակ:*

*— Աշխարհում եզակի ծառատեսակ է: Հայաստանում միայն մեզ մոտ՝ Ախնաքաթում է պահպանվել՝ այն էլ 50 հեկտարի վրա: Առանձնահատուկ ուշադրություն ենք դարձնում նրա պահպանությանը: Առաջ քչերը գիտեին այս անտառի մասին, հիմա՝ շատերը: Աշխարհի շատ վայրերից գալիս են տեսնելու և հիանալու այս ծառերով: Եկել են Լեհաստանից, Հունգարիայից, Չեխոսլովակիայից և ուրիշ երկրներից: Մեկ ուրիշ անտառ էլ ունենք՝ Կաղնուտը: Այս անտառի հիման վրա ստեղծվեց մեր պետարգելոցը: Կաղնուտի զբաղեցրած տարածությունը մոտ 1000 հեկտար է: Կաղնուտը կարմրածառերի անտառից տարբերվում է նրանով, որ այստեղ, բացի կաղնիներից, ուրիշ ծառատեսակներ չկան: Խստորեն հետեվում ենք, որ ոչ մի ծառ չկտրեն:*

*— Զգացվում է, որ հին անտառները ձեր անտառապետությունում լավ են պահպանվում,— դիմում եմ Անուշավանին,— իսկ հոգ տանո՞ւմ եք նոր անտառների ստեղծման մասին:*

*— Իհարկե: Վերջին տարիների ընթացքում միայն իմ ղեկավարած անտառապետությունում 150 հեկտարի վրա ծառատնկում ենք կատարել: Հատկապես մրգատու ծառատեսակներ ենք տնկել՝ խնձորենի, տանձենի, ընկուզենի: Հիմա փորձեր ենք կատարում: Սև ծովի ափերից կիպարիսներ, տույաներ, մայրիներ, սոճիներ ենք բերել և տնկել մեզ մոտ: Առայժմ արդյունքները լավ են, կարծես հարմարվել են, լավ են աճում:*

*Անուշավանը պատմում է, և դու տեսնում ես քո առջև հայրենի անտառներին սիրահարված, իր գործը անսահմանորեն հարգող մի մարդու: 20 տարուց ավելի է, որ նա իր կյանքը նվիրել է անտառների պահպանության ու նորերի ստեղծման գործին: Ավարտել է Երևանի հողաշինարարական տեխնիկումի անտառային բաժինը: Հետո, աշխատանքին զուգընթաց, սովորել և ավարտել է Թբիլիսիի անտառտեխնիկական ինստիտուտը և 1965 թվականից ստանձնել Գոշի անտառապետության անտառապետի պաշտոնը: Լավ աշխատանքի համար Անուշավան Բաբինյանը բազմիցս արժանացել է պատվոգրերի ու պարգևների:*

*ԳԵՎՈՐԳ ՋԱՐԵՆՑ*

# ԿԵՆԴԱՆԻ

*ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ*

**1780-ի** նոյեմբերին Բոլոնիայի համալսարանի հիսունչորսամյա պրոֆեսոր Լուիջի Գալվանին գորտերի նյարդային համակարգը ուսումնասիրելիս, ականատես եղավ գիտության հետագա զարգացման համար խիստ կարևոր մի երևույթի: Եվ դա տեղի ունեցավ պատահականորեն:

Այդ օրերին բախտի բերմամբ Գալվանիի լաբորատորիայում էլեկտրականության փորձեր էր անցկացնում նրա ֆիզիկոս ընկերներից մեկը: Ի ծնե ցրված բնավորության տեր Գալվանին, որ միշտ դժգոհում էր իր այդ արատի համար, այս անգամ պետք է արժանին հատուցեր բնությանը, որ իրեն օժտել էր ցրվածությամբ: Այո՛, այո՛, ցրվածությամբ. թե չէ ի՞նչ կլիներ ֆիզիկայի առաջընթացը, ե՞րբ կսկսվեր նրա զարգացման նոր փուլը, եթե Գալվանին պատահաբար հերձված գորտը չդներ էլեկտրական մեքենայի մետաղյա պատվանդանին:

Երևի ոչինչ չտար այդ պատահականությունը, եթե այդ պահին լաբորատորիա չմտներ պրոֆեսորի կինը, որը ականատես եղավ մի սարսափելի տեսարանի, մեքենայի պատվանդանին դրված գորտի թաթերը ձգվում էին և ցնցվում ինքնաբերաբար: Տիկին Գալվանին քարացավ մի պահ, այնուհետև հաշտվելով ստեղծված իրավիճակին, այդ արտասովոր երևույթի վրա հրավիրեց ամուսնու ուշադրությունը:

Գալվանին ընդհարվեց անբացատրելի թվացող այդ երևույթի հետ և նախքան որևէ եզրակացության հասնելը, շտապեց գրառել բազմաթիվ անգամ կրկնվող փորձի ընթացքը. «Ես հերձած գորտը դրեցի էլեկտրական մեքենայի պատվանդանին, մեքենայից որոշ հեռավորության վրա, իմ ասիստենտներից մեկը վիրադանակի ծայրով թեթևակի կպավ գորտի նյարդին և նրա մկանները ցնցվելով կարծես՛ ջղաձգվեցին:

Իմ մյուս ասիստենտը նկատեց, որ այդ երևույթը տեղի է ունենում միայն այն դեպքում, երբ էլեկտրական մեքենայի կոնդուկտորներից կայծեր են դուրս թռչում»:

Գալվանին անմիջապես եզրակացրեց, որ գաղտնիքը թաքնված է էլեկտրական կայծերի մեջ: Որպեսզի համոզվեր դրանում, նա մետաղյա հաղորդալարի վրա շարեց մասնատված գորտերի վերջավորություններ և կայծակի պահին կախեց իր երկաթյա պատշգամբում: Բայց դժբախտաբար կայծակի էլեկտրական լիցքերը ոչ մի կերպ չներգործեցին գորտերի թաթիկների վարքի վրա: Բայց ինչ չկարողացավ անել կայծակը, արեց քամին: Վերջինիս սաստկության պահերին գորտերը ցնցվում և հպվում էին պատշգամբի երկաթյա բազրիքներին: Այդ հպման պահերին նորից կրկնվում էր նույնը, ինչ տեղի էր ունենում էլեկտրական մեքենայի պատվանդանին: Գալվանին տեղի ունեցող երևույթը, այնուամենայնիվ, վերագրեց որոտի ժամանակ առաջացած էլեկտրական լիցքերին:

«Որոտի պահին կատարած մի շարք հաջող փորձերից հետո, ես ցանկացա,— գրում է Գալվանին,— հայտնաբերել մթնոլորտային էլեկտրականության ազդեցությունը պարզկա եղանակին»:

Դրա համար Գալվանին իր պարտեզի ցանկապատի երկաթյա վանդակներից կախեց ողնաշարի նյարդով պղնձյա կեռին ամրացված գորտը: Պարզվեց, որ կծկումներն ու ջղաձգումները իրար հաջորդեցին ոչ միայն որոտի պահին, այլ նաև պարզկա օրերին: Նույն համակարգը նա կախեց նաև փայտյա ցանկապատից և, ինչպես սպասվում էր, նա ականատես չեղավ և ոչ մի երևույթի:

Այնուհետև Գալվանին մեկը մյուսի ետևից փորձեր անցկացրեց տարբեր մետաղների առկայությամբ. նրա համար կեռիկ ու կախարան ծառայեցին երկաթն ու պղինձը, ալյումինն ու կապարը, ոսկին ու պլատինը, արծաթն ու կալիումը: Բոլոր դեպքերում արդյունքը նույնն էր՝ գորտերը կծկվում էին ու ջղաձգվում: Տարբերությունն այն էր, որ տարբեր մետաղների դեպքում փոխվում էին միայն կծկման ու ջղաձգման թափն ու չափերը:

Գալվանին դարձյալ չշտապեց եզրակացություն հանել. նա մետաղների փոխարեն գործի դրեց այնպիսի նյութեր, որոնք էլեկտրականության վատ հաղորդիչներն են (ռետին, ապակի, քար և այլն) և տեսավ, որ երևույթը չի կրկնվում:

Ուրեմն Գալվանիի համար պարզ դարձավ, որ էլեկտրականություն վատ հաղորդող նյութերի գործածման դեպքում երևույթ տեղի չունեցավ, տարբեր մետաղների դեպքում դրսևորվեց տարբեր չափերով ու թափով: Բայց նա ուշադրություն չդարձրեց ամենակարևորի վրա, երևույթը տեղի է ունենում միայն այն դեպքում, երբ գործարկվում են միաժամանակ երկու մետաղ: Ի նկատի ունենալով այս վերջին հանգամանքը, պետք է ասել, որ Գալվանիի եզրակացությունը տրամաբանական էր և հիմնականում ճիշտ: Այո՛, հիմնականում, բայց ոչ ամբողջությամբ: Իսկ ո՞րն էր այդ եզրակացությունը... «եթե փորձը կատարվում է անհաղորդիչ նյութերով և չի ստացվում որևէ արդյունք, ապա պետք է ընդունել, որ էլեկտրական աղբյուրը՝ «լեյդենյան շիշը» գտնվում է գորտի մարմնի խորքում և ոչ թե մարմնի վրա»:

«Մկանի էլեկտրական ուժի մասին» Գալվանիի աշխատությունը

# ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

լույս ընծայվեց 1791-ին: Ժամանակակիցների վկայությամբ, փոթորկվեց ողջ գիտական աշխարհը, դեռ ավելին. այդ փոթորիկն այնքան ուժեղ էր, որ կարելի էր համեմատել միայն Ֆրանսիայում տարածվող հեղափոխական շարժումների ստեղծած փոթորիկի հետ:

Աշխարհի գրեթե բոլոր քաղաքակիրթ անկյուններում կրկնում էին Գալվանիի փորձերը: Դարերով իր խաղաղ ճահճում ապրող գորտի անդորրը խանգարվեց. «գորտաորս» ծավալվեց ամենուր: Գորտերն սկսեցին ավելի շատ վախենալ մարդուց, քան արագիլից: Այն աստիճանի հասավ փորձերի ընթացքը, որ մի պահ թվաց, թե ուր որ է աշխարհի երեսից կչքանա գորտերի ցեղը: Եվ այս բոլորը, ինչպես գրում են ժամանակակիցները, «ծանրացավ Անլոիզո Լուիջի Գալվանիի խղճին»:

Նմանատիպ փորձեր անցկացվեցին նաև կենդանիների և մահացած մարդկանց վրա: Մեծ հույսեր ներշնչեցին հատկապես մարդկանց վրա անցկացված փորձերը: Անմահության գաղափարը նորից արթնացավ. ընդ որում առաջինը փորձեցին էլեկտրականությամբ կյանքի կոչել արդեն անշնչացածներին:

Ճիշտ է, առաջին փորձերը մատնվեցին անհաջողության, բայց ահա 1803-ին Գալվանիի զարմիկը՝ Ժան Ալդին հասավ որոշակի արդյունքի. երբ նա էլեկտրոդները մոտեցրեց կախաղանից իջեցրած մարդու դիակին, նրա շուրթերն ու կոպերը շարժվեցին:

Մեծ արձագանք գտան Գլազգոյի համալսարանի պրոֆեսոր Ուրի փորձերը: Նա իր փորձերն անցկացրեց կախաղանով մահվան դատապարտված մարդասպանների վրա: Նրա առաջին հաջողությունն եղավ այն, որ վերականգնվեց նրանց շնչառությունը: «Իսկ եթե հնարավոր է վերականգնել շնչառությունը,— մտածում էր Ուրը,— ուրեմն կարելի է վերականգնել նաև օրգանիզմի մյուս ֆունկցիաները»:

Մի անգամ Ուրն առաջարկեց էլեկտրոդներից մեկը միացնել դիակի կրունկին, մյուսը՝ արտեվանունքային նյարդին: Դիակի դեմքը հանկարծ կենդանացավ, բերանը բացվեց, աչքերը՝ նույնպես: Սարսափ պատեց ներկաներին...

•

Անմահության ձգտումներ, որքան կոտրտված հույսեր եք արթնացրել դուք: Ավա՜ղ, էլեկտրականության ազդեցությամբ կյանքի կոչելու հույսերը ևս դատապարտվեցին մահվան. մի պահ տևեց միայն դիակի կենդանացումը, մի պահ... և... վերջ:

Բայց սա հիմք չի տալիս պնդելու, թե էլեկտրականությունը իր երկարամյա գոյության ընթացքում չի փրկել և ոչ մեկի կյանքը. բավական է հիշել, որ մեր հիվանդանոցներում հաճախ էլեկտրական խարազանի օգնությամբ գործողության մեջ է դրվում արդեն հիվանդի կանգ առած սիրտը: Էլեկտրական հարվածը հաճախ օգնության է հասնում նաև անդամալուծության դեպքերում: Էլ չենք ասում էլեկտրաբուժման մասին ընդհանրապես, որը մի ամբողջ բնագավառ է և հայտնի է բժիշկներին էլեկտրաթերապիա անվան տակ:

Գալվանիի փորձերի և գրի առած պատկերացումների հիման վրա հետագայում զարգացավ և ձևավորվեց մի ուսմունք, ըստ որի կենդանի օրգանիզմներում գոյություն ունեն բիոհոսանքներ: Այդ հոսանքներով, օրինակ, կարելի է բացատրել այնպիսի մի բարդ պրոցես, ինչպիսին հիշողությունն է: Ուղեղ մուտք գործող ինֆորմացիան փոխարկվում է յուրահատուկ էլեկտրական շղթաների: Ընդ որում յուրաքանչյուր ինֆորմացիայի, այսպես ասած «հետքին» համապատասխանում է իր շղթան: Քանի որ գլխուղեղում նյարդային բջիջների թիվը շուրջ տասը միլիարդ է, ապա «հետքերի» բազմազանությունը, որոնք կարող են մնալ այդ բջիջներում, անվերջ շատ է, բոլոր դեպքերում բավական է, որ մարդու ողջ կյանքում ուղեղում միշտ էլ տեղ լինի նոր գիտելիքների և ինֆորմացիաների համար: Կարճ ասած, եթե փորձենք մարդու ուղեղի հանգույն կառուցել էլեկտրական համակարգ և յուրաքանչյուր «բջջում» տեղավորել առնվազն մեկ լամպ (սկզբունքորեն, իհարկե, դա հնարավոր է), ապա կըստացվի այնպիսի մի կույտ, որի ծավալը ավելի մեծ կլինի, քան տասնյակ բարձրահարկ շենքերի ծավալները միասին վերցրած, իսկ կշիռը կհասնի միլիոնավոր տոննաների: Պահանջվող էներգիան տասնյակ անգամ ավելի մեծ կլինի ժամանակակից ամենահզոր հիդրոէլեկտրակայանի արտադրած էներգիայից:

Ճիշտ է, էլեկտրոդների օգնությամբ մահացածներին հնարավոր չեղավ կյանք պարգևել, բայց նրանք իրենց անսպասելի կիրառությունն «առաջարկեցին» արկի՝ մարմնի մեջ մխրճված բեկորների որոնման գործում: Նման բեկորների որոնման եղանակները շատ էին: Օրինակ, մեծ Գարիբալդիի մարմնում գտնվող բե-

կորը գտնելու համար ֆրանսիացի վիրաբույժ Նելատոն կիրառեց ծակոտկեն ճենապակյա ծայրով զոնդ, որը հանդիպելով կապարին՝ սևանում էր և հաստատում բեկորի տվյալ տեղում գտնվելու հավանականությունը: Իսկ բժիշկ Ֆաբրը ահա առաջարկեց սրածայր էլեկտրոդներ. երբ շղթան փակվում է՝ նշանակում է էլեկտրոդները դեմ են առել բեկորին:

Գալվանիին նախորդած հայտնագործությունները արդեն բերել էին որոշակի եզրակացության, որ էլեկտրականությունը թեթևացնելու է մարդկության կյանքը: Լեյդենյան 22ի հայտնաբերումը հաստատեց այդ եզրակացությունը, իսկ երբ Ֆրանկլինը բացատրեց կայծակի էլեկտրական բնույթը և ապա Գալվանին էլեկտրական երևույթի ականատես եղավ նաև պարզկա եղանակին, թվաց, թե «ողջ բնությունը դարձավ էլեկտրական»:

Իսկ եթե բովանդակ բնությունն է էլեկտրականացած,— եզրակացրին գիտնականները,— ապա մարդու թե՛ ֆիզիկական և թե՛ հոգևոր կյանքը պետք է բնութագրվի նրա երակներով և մկաններով:

Այսպես ծագեց կենդանի էլեկտրականություն հասկացությունը, որով պայմանավորվեց ոչ միայն մարդու, այլև աշխարհի վրա եղած բոլոր կենդանիների կյանքը: Գալվանին ցույց տվեց, որ «կենդանի էլեկտրականությունն» ունի նույն բնույթը, ինչ էլեկտրաֆոր մեքենայով ստացվածը:

Ավելի ուշ՝ 1797-ին Սպալանցանին գրած նամակ-հոդվածում Գալվանին տվեց «կենդանի էլեկտրականության» առավել ամբողջական պատկերացումը. «այդ էլեկտրականությունը անհավասարակշիռ վիճակում կուտակվում է մկանային հյուսվածքներում, մկաններին հպված նյարդերով այն անցնում է դեպի մետաղյա աղեղը, իսկ նրանով կրկին վերադառնում մկանները»: Այլ կերպ ասած, մկաններն ու նյարդերը, ըստ Գալվանիի, կազմում են միևնույն կոնդենսատորի յուրահատուկ շրջադիրներ, ճիշտ այնպես, ինչպես լեյդենյան շիշն է. ապակե բալոն, որի դրսի և ներսի պատերը պատող անագաթերթերը ծառայում են շրջադիրներ. ներսի շրջադիրը միանում է մետաղյա ձողին, իսկ դրսի շրջադիրը՝ հողին կամ մեքենայի հակառակ բևեռին:

Իսկ թե ինչ եղավ դրանից հետո, ճի՞շտ էին արդյոք Գալվանիի եզրակացությունները, դուք կիմանաք հաջորդ պատմվածքում:



# ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉԸ

*Հովսեփ Ռևազյանը Երևանի Նար-Դոսի անվան դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ է: Նա ակտիվորեն մասնակցում է դպրոցական բոլոր միջոցառումներին, հանդիսանալով նաև բեմադրությունների, ներկայացումների կազմակերպիչ, ձևավորող ու ռեժիսոր: Հինգերորդ դասարանում նրա նախաձեռնած տոնածառի հանդեսը մինչև օրս էլ մնացել է ուսուցիչների ու աշակերտների հիշողության մեջ: Նա ջոկատային ջոկատավար է եղել, դրուժինայի խորհրդի անդամ, այնուհետև կոմերիտական կազմակերպության քարտուղարի տեղակալ, իսկ այս տարի ընտրվեց դպրոցի ԼԿԵՄ կազմակերպության առաջին քարտուղար:*

*Օրինակելի աշխատանքի համար Հովսեփը պարգևատրվել է ՀԼԿԵՄ Կենտկոմի, ՀԼԿԵՄ Մյասնիկյանի շրջկոմի պատվոգրերով:*

*— Նոր ուսումնական տարվա սկզբից,— պատմում է նա,— դպրոցի ԼԿԵՄ կոմիտեն սահմանելու է միջդասարանային փոխանցիկ դրոշ: Յուրաքանչյուր ամսի վերջին կամփոփենք սկզբնական կոմերիտական կազմակերպությունների ձեռք բերած հաջողությունները ուսման, կարգապահության և այլ հարցերում և դրոշը կհանձնվի արժանավորին: Տարեսկզբից կգործի կոմերիտական ցուցափեղկը, որտեղ ծաղրանկարների, երգիծական մանրապատումների միջոցով կխարազանվեն ծույլ և թերացող աշակերտները: Նմանատիպ, բայց արդեն քառորդային ցուցափեղկ կունենան նաև բոլոր դասարանները:*

*Դպրոցում շնորհալի պատանիներ շատ կան և պետք է հնարավորություն ստեղծվի, որպեսզի նրանք կարողանան դրսևորել իրենց:*

*Կոմերիտմիությունը չի մոռանում նաև իր պատանի բարեկամներին՝ պիոներներին: Այդ նպատակով կոմիտեի մի քանի անդամներ կցված են պիոներական կազմակերպությանը, որ հետևեն դրուժինայի ու ջոկատների աշխատանքին և անհրաժեշտ օգնություն ցույց տան նրանց:*

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ



# ՄՆԱ՛Ս ԲԱՐՈՎ, ՃԱՄԲԱՐ







Լույս է տեսնում 1928 թվականից

№ 9 սեպտեմբեր 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*ՆԿ. ՎԱՂԻՆԱԿ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05766: Պատվեր 1856: Տպաքանակ՝ 79100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 10/IX 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# ԿՈՂՏՆԱԳԻՐ ,,ՀԱՆՍ ՔՐԻՍՏԻԱՆ ԱՆԴԵՐՍԵՆ"

*Փորձեք մի անգամ ևս վերհիշել Անդերսենի հմայիչ հեքիաթները և պատասխանել ներքևում բերված հարցերին: Միանման տառերը արտահայտվում են միևնույն թվով՝ ինչպես հարցերի պատասխաններում, այնպես էլ գծագրում: Գծագրի թվերը համապատասխան տառերով փոխարինելուց հետո, կկարդաք Անդերսենի տասնմեկ հեքիաթների վերնագրերը.*

*1) 1, 15, 3, 21, 12, 3 — Քաղաք, որտեղ ծնվել է Անդերսենը:*

*2) 5, 2, 10, 4, 12 — Հեքիաթի նույնանուն հերոսներ, որոնցից փոքրը անողոք, բայց արդարացի պատիժ է տալիս ագահ մեծին:*

*3) 19, 10, 7, 9, 17, 5, 10, 9, 10, 26, 21, 3, 9, 13 — Տասնմեկ եղբոր և միակ քրոջ մասին հեքիաթը:*

*4) 11, 10, 21, 12 — Փոքր եղբորը «Դմբո» են անվանում, բայց նա բոլորից խելոքն է: Ի՞նչ է նրա իսկական անունը:*

*5) 22, 3, 9, 15, 10 — Յոթ հեքիաթներում գործող հերոսուհի:*

*6) 8, 9, 10, 11, 10, 9, 12 — Ո՞վ է ծովում խեղդվելուց փրկում արքայազնին:*

*7) 12, 6, 24, 10, 5 — Երգող թռչուն, հեքիաթի հերոս:*

*8) 11, 9, 10, 11, 10, 21 — Կախարդական իր, որի շնորհիվ զինվորը փրկվում է մահից:*

*9) 10, 9, 14, 10, 7, 10, 23, 21 — Բազմաթիվ հեքիաթների հերոս:*

*10) 28, 3, 12, 10, 20, 4, 21, 3, 19, 11, 10, 9, 12, 21, 10, 20, 4, 21 — Հեքիաթ երկու խաղալիքների՝ հոլի և գնդակի մասին:*

*11) 27, 21, 27, 30, 4, 5 — «Տարվա պատմությունը» հեքիաթի հերոս:*

*12) 24, 6, 23, 10, 9, 10, 29, 13 — Հեքիաթ, որն սկսվում է այսպես. «Կար-չկար մի խեղճ արքայորդի կար: Նրա թագավորությունը շատ էր փոքրիկ, բայց և այնպես այնքան չէր, որ արքայորդին չկարողանար ամուսնանալ, իսկ ամուսնանալ նա ուզում էր»:*

*13) 5, 8, 10, 16, 4, 5 — Շոտլանդական փշոտ ծաղիկ, «մեծ, խիտ ու ճյուղառատ, որն աճել էր այգին դաշտից անջատող ցանկապատից դուրս»:*

*Կազմեց ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ*